ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 2
ՓԵՏՐՎԱՐ
1961 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVIII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՆՈՐ ՈՒՂԵՆԻՇ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Հունվարյան պլենումը նոր ուղենիշ հանդիսացավ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար ծավալված համաժողովրդական պայքարում:

Նոր ուղենի՞շ... Որքա՜ն անհրաժեշտ է անծանոթ ուղիներով ընթացող ճամփորդի համար ձողափայտին ամրացված սլաքը, որը ցույց է տալիս նպատակին հասնելու ճանապարհը: Չէ՞ որ ճիշտ ճանապարհ բռնած ճամփորդը քայլում է ավելի համարձակ ու վստահ և շուտ է հասնում նպատակակետին:

Լուսավոր ու պայծառ է մեր պարտիայի ու սովետական ժողովրդի ճանապարհը: Մարքսիզմ-լենինիզմի վառ ճառագայթները վաղուց են փարատել ապագան պարուրող մշուշները և լուսավորել նոր, ամենակատարելագործված հասարակարգի կոնտուրները: Պարտիան ու ժողովուրդը քայլում են այդ ճանապարհով, քայլում աննահանջ. հաստատ, անսխալ է նրանց ուղին:

Բայց որքան էլ մեծ ու լուսավոր լինի ճանապարհը, մանավանդ, եթե առաջին անգամն ես ընթանում, ուղենիշները խիստ անհրաժեշտ են: Ուղենիշները առավել ևս անհրաժեշտ են ժողովրդի համար, որը Լենինի վառած անմար ջահը Դանկոյի սրտի նման բարձր պահած՝ առաջինն է քայլում դեպի ճառագայթաշող ապագայի բարձունքները:

Նայենք մեր անցած ուղին. դեպի գագաթը ձգվող դժվարանցանելի կածաններում կամ անօրինակ վերելքներում որքա՜ն պայծառ ուղենիշներ կան, որոնք ցույց են տվել մեծ ճանապարհի ամենակարճ, ամենաճիշտ, ամենահուսալի շրջադարձերը: Պարտիան իր հուժկու ձեռքով ամրացրել է դրանք առաջընթացի վճռական բնագծերում. ժողովրդի ուղեցույցն են եղել դրանք, նա մաքառել է և հաղթանակել:

Եվ քայլում է...

Պարտիայի Կենտկոմի Հունվարյան պլենումը պայքարի նոր մարտական ծրագիր մշակեց: Պլենումի որոշումը «Հողագործության և անասնաբուծության մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի 1960 թվականի պետական պլանի և սոցիալիստական պարտավորությունների կատարման և գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին», ընկեր Ն. Ս. Խրուշչովի բովանդակալի ելույթը պլենումում՝ փաստաթղթեր են, որոնք հսկայական նշանակություն կունենան ո՛չ միայն սոցիալիստական գյուղատնտեսության, այլև մեր ամբողջ հասարակարգի հետագա զարգացման համար:

Քաղաքական խոշոր նշանակություն ունեցավ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում՝ կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության արդյունքների մասին հարցի քննարկումը: Այդ առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար ընկեր Մ. Ա. Սուսլո-

վը: Կենտկոմի պլենումը նշեց, որ 1960 թվականի նոյեմբերին Մոսկվայում տեղի ունեցած կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունը հանդիսացավ համաշխարհային պատմական խոշոր նշանակություն ունեցող երևույթ: Պարտիայի Կենտկոմի պլենումը միահամուռ հավանություն տվեց խորհրդակցության արդյունքներին, վստահություն հայտնեց, որ հետագայում ևս կոմունիստական և բանվորական պարտիաները միասնական պայքար կմղեն մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարների հաղթանակի համար:

Պլենումն ամփոփելով մեր երկրի էկոնոմիկայի զարգացման փայլուն հաջողությունները՝ մեկ անգամ եւ աշխարհի բոլոր աշխատավորներին, բոլոր ազնիվ մարդկանց հնարավորություն ընձեռեց համոզվելու սոցիալիստական հասարակարգի առավելությունների հարցում, գոհունակության ու հպարտության ջերմ զգացումով լցրեց նրանց սրտերը:

ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի աճը յոթնամյակի երկու տարում կազմել է 22,1 տոկոս, նախատեսված 17-ի փոխարեն: Առաջադրանքից ավելի արտադրվել է 113 միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք: Բոլոր հաշվարկները ցույց են տալիս, որ 1961 թվականին երկրում կձուլվի առնվազն 71 միլիոն տոննա պողպատ, իրականում 6 միլիոն տոննայով ավելի, քան նախատեսված էր յոթնամյա պլանով: Դա մե՜ծ հաղթանակ է մեր արդյունաբերության զարգացման գործում:

ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում զգալի հաջողություններ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության զարգացման բնագավառում: 1953 թվականի համեմատությամբ մեծ չափով ավելացել են գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրությունը և դրանց վաճառքը պետությանը: Հացահատիկի արտադրությունն անցյալ տարի կազմել է 8,1 միլիարդ փութ, կամ 1953 թվականի համեմատությամբ ավելացել է 61 տոկոսով: Շաքարի ճակնդեղի արտադրությունն այդ նույն ժամանակաշրջանում ավելացել է 146, մսինը՝ 50, կաթինը՝ 69 տոկոսով և այլն:

Զգալիորեն ավելացել է գյուղատնտեսական մթերքների ապրանքային ելքը. հացահատիկի պետական գնումներն ավելացել են 50, շաքարի ճակնդեղինը՝ 111, մսինը՝ 119, կաթինը և կաթնամթերքներինը (կաթի վերածած)՝ 147 տոկոսով և այլն:

Առաջներում երբեք մեր երկիրը չի ունեցել գյուղատնտեսական արտադրության զարգացման այնպիսի տեմպեր, ինչպես վերջին յոթ տարում:

Չնայած այն բանին, որ մեր ձեռք բերած հաջողություններն ակներև են, բայց պլենումում ծավալվեց գյուղատնտեսության ղեկավարման, պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների աշխատանքի մեթոդներում եղած թերությունների սուր, սկզբունքային քննադատություն:

Գյուղատնտեսության բնագավառում գոյություն ունեցող թերությունների այդ քննադատությունը տեղի ունեցավ պատմականորեն այլ իրադրության պայմաններում: Երբ 1953 թվականին մեզ մոտ գյուղատնտեսության բոլոր ճյուղերը լրջորեն ետ էին մնում և գյուղատնտեսության թերությունների մեր քննադատությունն այն ժամանակ թշնամիները հորջորջում էին որպես ճրգնաժամ, ապա այժմ դրությունը բոլորովին այլ է: Այժմ մեր թերությունների քննադատությունը տեղի է ունենում սոցիալիստական էկոնոմիկայի բուռն



անի, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի մեծ հաջողությունների պայմաններում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ամենայն սրությամբ դրեց գյուղատնտեսության հետագա զարգացման հարցերը: Բանն այն է, որ գյուղատնտեսությունը դեռևս այնպիսի բարձր տեմպերով չի զարգանում, ինչպես արդյունաբերությունը, և գյուղատնտեսական մթերքների արտադրանքի աճը չի համապատասխանում ժողովրդի աճած և աճող պահանջմունքներին:

Վերջին հինգ տարում բնակչությունն աճել է ավելի քան 18 միլիոն մարդով, այդ թվում քաղաքային բնակչությունը՝ 17 միլիոնով. բարձրացել է աշխատավորների նյութական բարեկեցությունը, աճել է աշխատավարձը, զգալի չափով ավելացել են կոլտնտեսականների եկամուտները: Հետևապես բնակչությունը սկսել է ավելի շատ միս, կաթ, յուղ և այլ մթերքներ գնել: Եվ դա բնական է. դա սոցիալիզմն է գործողության մեջ:

Այդպես, անշուշտ, ավելի նշանակալից չափով պետք է բարձրանա աշխատավորության կենսամակարդակը և այսուհետև: Ամբողջ խնդիրն այն է, որպեսզի մեր էկոնոմիկան բավարարի ժողովրդի արագ աճող պահանջմունքները: Այլ կերպ, կարող է ստացվել խզում ազգաբնակչության աճող պահանջների և դրանք բավարարելու հնարավորության միջև: «Հարկավոր է ստեղծել այնպիսի պայմաններ,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը իր ելույթում,— որպեսզի սննդամթերքների և ժողովրդական սպառման ապրանքների նկատմամբ բնակչության աճող պահանջարկը բավարարվի լրիվին, որպեսզի արտադրությունը միշտ առաջ անցնի պահանջարկից»:

Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ստեղծել է հզոր արդյունաբերություն: Մենք միշտ ղեկավարվել ենք լենինյան այն սկզբունքով, որ առանց հզոր արդյունաբերության, առաջին հերթին ծանր ինդուստրիայի, առանց էլեկտրիֆիկացիայի հնարավոր չէ զարգացնել երկրի էկոնոմիկան, այդ թվում և գյուղատնտեսությունը: Պարտիայի վարած այդ իմաստուն քաղաքականությունը տվել է իր հիանալի պտուղները: Այժմ Սովետական Միությունն արդյունաբերական արտադրությամբ աշխարհում գրավում է երկրորդ տեղը և կարող է արտադրել այն ամենը, ինչ մեզ անհրաժեշտ է: Հուսալի է մեր երկրի պաշտպանությունը, մենք կարող ենք խորտակել ամեն մի թշնամու, որը կփորձի հարձակվել մեզ վրա:

Այժմ ստեղծված են ժողովրդի պահանջմունքները բավարարելու մեր հնարավորությունները, ստեղծվել են բոլոր պայմանները, որպեսզի արդյունաբերությունը և գյուղատնտեսությունն ընթանան համաքայլ: Նկատի ունենալով գյուղատնտեսության զարգացման տեմպերի արագացման անհրաժեշտությունը՝ պլենումը որոշեց զգալիորեն ավելացնել պետական ներդրումները գյուղատնտեսության բնագավառում:

Ն. Ս. Խրուշչովը, հիմնավորելով այդ միջոցառման անհրաժեշտությունը, նշեց. «Լրացուցիչ միջոցներ հատկացնելով գյուղատնտեսության զարգացման համար, մենք պետք է մեր առջև նպատակ դնենք՝ ստեղծել այնպիսի պայմաններ, որոնք թույլ տան գյուղատնտեսությունը վարել այնպես, որ նա կախում չունենա բնության քմահաճությունից: Գյուղատնտեսական արտադրությունը պետք է այնպես կազմակերպվի, որ այն ամեն տարի, կլիմայական ամեն մի պայմանում մեզ համար երաշխավորի անհրաժեշտ մթերքների ստացումը ժողովրդի պահանջմունքները բավարարելու համար»:

Պլենումը որոշեց խոշոր մասշտաբի միջոցառումներ ձեռնարկել ոռոգման
ողղությամբ, որպեսզի առաջիկա մի քանի տարիներում, մասնավորապես
երկրի հարավային շրջաններում ոռոգվեն միլիոնավոր հեկտար հողեր: Դըժ-
վար է գերագնահատել այդ միջոցառման նշանակությունը: Դրա իրակահա-
ցումը հնարավորություն կտա հարավի հողային հսկայական տարածություն-
ներում մշակելու ամենաեկամտաբեր կուլտուրաները, մեծ չափով բարձրաց-
նելու բերքատվությունը, ինտենսիվորեն զարգացնելու գյուղատնտեսությունը:
Նախատեսվում է նաև ծավալել մելիորացիայի աշխատանքները, չորաց-
նել ճահճակալած և չափից դուրս խոնավ հողերը:

Պլենումը կարևորագույն և անհետաձգելի խնդիր համարեց հանքային
պարարտանյութերի, հերբիցիդների, թունաքիմիկատների և քիմիական այլ
միջոցների արտադրության հետագա զգալի ավելացումը, գյուղատնտեսական
մեքենաշինության առավել զարգացումը:

Պլենումը լուրջ միջոցառումներ մշակեց գյուղատնտեսության ղեկավա-
րությունը կատարելագործելու ուղղությամբ: Վերակառուցվեց Գյուղատնտե-
սության մինիստրության սիստեմը վերից վար: Այժմ Գյուղատնտեսության
մինիստրության հիմնական խնդիրներն են՝ գիտական հիմնարկների ղեկավա-
րումը, գիտության հետագա զարգացումը և գյուղատնտեսության առաջավոր
փորձի լայն արմատավորումն արտադրության մեջ: Գյուղատնտեսության մի-
նիստրության գործունեության նպատակն է ամեն կերպ օգնել բոլոր կոլտնտե-
սություններին ու սովխոզներին՝ հասնելու երկրի առաջավոր տնտեսություն-
ների մակարդակին: Մինիստրության իրավասությանն են պատկանում սելեկ-
ցիոն աշխատանքի կազմակերպումը, սերմնաբուծության զարգացումը, անա-
սունների ցեղերի շրջանացումը, տոհմաբուծության զարգացումը, անասնա-
բուժական և կարանտինային ծառայությունը, գյուղատնտեսական գրականու-
թյան հրատարակումը և այլն:

Կոլտնտեսությունների և սովխոզների մատակարարման գործը բարելա-
վելու նպատակով պլենումը նպատակահարմար գտավ ստեղծել տնտհաշվարկի
վրա հիմնված համամիութենական միավորում, որի խնդիրը պետք է լինի
հաշվի առնել տեխնիկայի, պահեստամասերի, պարարտանյութերի պահանջ-
ները և Պետպլանի միջոցով արդյունաբերությանը ներկայացնել անհրաժեշտ
հայտեր, ապահովելով մեքենաների և այլ նյութերի վաճառքը կոլտնտեսու-
թյուններին և սովխոզներին: Այլ կերպ ասած, միավորումը պետք է միջնորդ
հանդիսանա, մի կողմից՝ արդյունաբերության, մյուս կողմից՝ կոլտնտեսու-
թյունների և սովխոզների միջև:

Պլենումը նշեց հացահատիկի արտադրության ավելացման կոնկրետ ուղի-
ները: Երկրի պահանջները լրիվ չափով բավարարելու համար առաջիկա տա-
րիներին հացահատիկի պետական գնումները պետք է հասցնել 4 միլիարդ 200
միլիոն փթի: Այդ առաջադրանքի կատարմանը կմասնակցեն Միության բոլոր
ռեսպուբլիկաները, երկրամասերն ու մարզերը: Սկզբունքային քննադատու-
թյան ենթարկելով առանձին ռեսպուբլիկաների ու մարզերի պարտիական, սո-
վետական օրգանների գործունեությունը, ընկեր Ն. Ս. Խրուշչովը նրանց ուշա-
դրությունը հրավիրեց այդ գործում եղած թերությունների վրա: Բարձր գնա-
հատելով գյուղատնտեսության առաջավորների հաջողությունները՝ Ն. Ս.
Խրուշչովը համոզիչ կերպով ցույց տվեց, որ աշխատանքի լավ կազմակերպ-
ման, առաջավոր փորձի արմատավորման շնորհիվ հնարավոր է կարճ ժա-



մանակամիջոցում զգալի չափով ավելացնել հացահատիկի արտադրությունը:
Հացահատիկի արտադրության ավելացման կարևոր ռեզերվը հատիկային
եգիպտացորենի արտադրության ընդլայնումն է մասնավորապես Ուկրաինա-
յում, ՌՍՖՍՌ-ի հարավային շրջաններում, Մոլդավիայում, Անդրկովկասյան
ռեսպուբլիկաներում:

Անասնաբուծության զարգացման հարցերը վերջին տարիներում գտնվում
են մեր պարտիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի ուշադրության կենտրոնում:
Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ երկրում զգալի չափով ավելացել է
մսի, կաթի, յուղի, ձվի արտադրությունը, ավելանում է նաև անասնագլխա-
քանակը: Սակայն, ինչպես նշվեց պլենումում, վերջին ժամանակներս անաս-
նաբուծության նկատմամբ ուշադրությունը թուլացել է: 1960 թվականին թե-
րակատարվեցին անասնաբուծական հիմնական մթերքների արտադրության
յոթնամյա պլանով նախատեսված առաջադրանքները: Առանձին ռեսպուբլի-
կաներում դանդաղ է ընթանում հանրային անասունների, հատկապես կովերի
գլխաքանակի աճը. ունեցել ենք անասունների խոշոր կորուստներ: Պլենումն
անասնաբուծության ուղղությամբ գլխավոր խնդիրը համարեց կովերի գլխա-
քանակի աճը, խոզաբուծության և թռչնաբուծության զարգացումը, անասնա-
բուծության մթերատվության բարձրացումը, կերի կայուն բազայի ստեղծումը,
եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, հատիկա-լոբազգի կուլտու-
րաների, միամյա և բազմամյա խոտաբույսերի ցանքերի ամեն կերպ ծավա-
լումը և բերքատվության բարձրացումը: Խնդիր դրվեց բարելավել անասուննե-
րի տոհմաբուծության գործի դրվածքը, ավելի բարձրացնել անասունների
կաթնա-յուղայնությունն ու մսատվությունը: ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը պա-
հանջեց անհապաղ վերացնել ոչխարաբուծության զարգացման գործում տեղ
գտած թերությունները, հասնել ոչխարների գլխաքանակի արագ ավելացման,
կանխել մանր ու խոշոր եղջերավոր անասունների կորուստները:

Տեխնիկական կուլտուրաների, ամենից առաջ՝ բամբակի, շաքարի ճա-
կընդեղի, ինչպես նաև կարտոֆիլի, բանջարանոցային կուլտուրաների, խա-
ղողի արտադրության զարգացման ասպարեզում հիմնական խնդիրը բերքա-
տվության բարձրացումն է, այդ կուլտուրաների մշակման առաջավոր եղա-
նակների արմատավորումը:

Պլենումը պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների ու
կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց դաշտավարության և ա-
նասնաբուծության սպասարկման համար կոմպլեքսային մեքենայացված բրի-
գադաների լայն տարածման, կոլտնտեսականների, սովխոզների բանվորների,
գյուղատնտեսության մասնագետների նյութական շահագրգռվածության սկըզ-
բունքի կիրառման անհրաժեշտության վրա:

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը լսեց ՌՍՖՍՌ Մինիստրների Սո-
վետի նախագահի, միութենական ռեսպուբլիկաների պարտիայի կենտկոմների
քարտուղարների զեկուցումները 1960 թվականին հողագործության և անաս-
նաբուծության մթերքների արտադրության և դրանք պետությանը վաճառելու
պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման
ու գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին:

Պլենումում հաշվետվություն տվեց նաև Հայաստանի Կոմպարտիայի
Կենտրոնական Կոմիտեն: Ինչպես հաշվետվություն էր դա, մեր պարտիական

կազմակերպության, ռեսպուբլիկայի ամբողջ աշխատավորության հաշվետվությունը ՍՄԿՊ Կենտկոմի առջև, սովետական ողջ ժողովրդի առջև:

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները լայն սոցիալիստական մրցություն էին ծավալել ՍՄԿՊ Կենտկոմի պլենումն արժանավայել դիմավորելու համար: Յոթնամյակի անցած տարիներում նրանք զգալի չափով ավելացրին գյուղատնտեսական որոշ մթերքների արտադրությունը:

Բամբակի արտադրության ուղղությամբ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարվեցին 106,2 տոկոսով, յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 26,8 ցենտներ բամբակ, 4,1 ցենտներով ավելի, քան նախորդ տարում: Ճակնդեղագործները յուրաքանչյուր հեկտարից ստացան 306 ցենտներ շաքարի ճակնդեղ և սոցիալիստական պարտավորությունը կատարեցին 106,8 տոկոսով: Հաջողությամբ կատարվում է ծխախոտի արտադրության և վաճառքի սոցիալիստական պարտավորությունը: 1959 թվականի համեմատությամբ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում 1960 թ. մսի արտադրությունն ավելացավ 22,4, կաթինը՝ 9,8, ձվինը՝ 82,7 տոկոսով: Կոլտնտեսություններն ու սովխոզները մսի վաճառքի պլանը կատարեցին 137, կաթինը՝ 112 տոկոսով, կամ նախորդ տարվա համեմատությամբ դրանք համապատասխանաբար ավելացան 30 և 19 տոկոսով:

Մսի արտադրության ավելացմանը զուգընթաց ավելացել է նաև խոշոր եղջերավոր անասունների, խոզերի և թռչունների գլխաքանակը:

Հանգամանորեն վերլուծելով գյուղատնտեսության բնագավառում Հայաստանի պարտիական կազմակերպությունների աշխատանքը, ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Զարոբյանն իր զեկուցման մեջ նշեց այն լուրջ թերությունները, որոնք տեղ են գտել ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների, սովխոզների, պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների գործունեության մեջ:

1960 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ո՛չ միայն չկարողացան կատարել անասնաբուծական մթերքների արտադրության և անասունների գլխաքանակի ավելացման վերաբերյալ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, այլև չապահովեցին յոթնամյա պլանով նախատեսված առաջադրանքների կատարումը:

Յոթնամյակի առաջին երկու տարում, պլանի համեմատությամբ, չարտադրվեց մոտ 4 հազար տոննա միս (կենդանի քաշով), 67 հազար տոննա կաթ, ավելի քան հազար տոննա բուրդ: Չնայած հանրային անասունների գլխաքանակի որոշ աճին, ընդհանուր առմամբ ռեսպուբլիկայում 1960 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, պակասեց խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակը: Վերջին երկու տարում դանդաղ է աճում նաև կովերի գլխաքանակը: 1960 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները 218 հազար ոչխարի անկում ունեցան, որը կազմում է ոչխարների գլխաքանակի 11 տոկոսը: Ռեսպուբլիկայի առանձին շրջաններում սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում կան ավելի լուրջ թերություններ:

Պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովը խիստ քննադատության ենթարկեց այն աշխատողներին, ովքեր ստանձնելով բարձր պարտավորություններ, այնուհետև ոչինչ չեն անում դրանց կատարումն ապահովելու համար: Փաստորեն այդպես վարվեցին Ազիզբեկովի շրջանի ղեկավարները: 1960 թվականի գար-



նանը ՀԿՊ Ազիզբեկովի շրջկոմի և շրջսովետի գործկոմի նախաձեռնությամբ շրջանի աշխատավորները ստանձնեցին բարձր պարտավորություններ, որպիսիք հրապարակվեցին ռեսպուբլիկական մամուլում: Սակայն իրականում Ազիզբեկովի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները չկատարեցին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները և բազմաթիվ ցուցանիշներով չպահպանեցին նույնիսկ 1959 թվականի ձեռք բերած մակարդակը: Իհարկե, շրջանի ղեկավարները (շրջկոմի քարտուղար Բ. Աբրահամյանը, շրջսովետի գործկոմի նախագահ Ա. Պետրոսյանը) փորձում են «բացատրել» պարտավորությունների անբավարար կատարման պատճառները, բայց, ինչպես ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը, բացատրություններ կարելի է գտնել բյուրոկրատի համար, բայց ժողովրդի համար այդպիսիք գտնել չի կարելի:

Սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում լուրջ թերություններ կան նաև ռեսպուբլիկայի մի շարք այլ շրջաններում (Կամո, Ղուկասյան, Ամասիա և այլն):

Պլենումում ՀԿՊ Կենտկոմի զեկուցման մեջ միանգամայն իրավացիորեն էր նշված, որ ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատանքներում գոյություն ունեցող թերությունների հիմնական պատճառն այն է, որ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը և ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետը կադրերի նկատմամբ թուլացրել են պահանջկոտությունը գյուղատնտեսության գործերի վիճակի և գյուղատնտեսական մթերքների արտադրության աճման այնպիսի տեմպերի ապահովման համար, որ մեզնից պահանջում են Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը: Պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները դեռ անբավարար խորությամբ են զբաղվում գյուղատնտեսական արտադրության և, մասնավորապես, անասնապահության հարցերով:

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները լուրջ խնդիրներ են դնում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների, գյուղատնտեսության բոլոր աշխատողների առջև:

Անասնաբուծության և դաշտավարության գծով յոթնամյա պլանով նախատեսված առաջադրանքների կատարումը պահանջում է քաղաքական և կազմակերպական հսկայական աշխատանք, գյուղատնտեսությունը վարելու գործում առավել շրջահայեցողություն և հմտություն, եղած ռեզերվների պլանավորված օգտագործում:

Ընթացիկ տարում անբարենպաստ պայմաններ ստեղծվեցին աշնանացանի ցանքատարածությունների համար: Բացառված չէ, որ գարնանը անհրաժեշտություն առաջանա զգալի հողային տարածությունների վրա կրկնացանք անել: Անհրաժեշտ կլինի որոշ չափով ավելացնել գարնանացան հացահատիկի ցանքատարածությունները: Կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է ձեռնարկեն նախապատրաստական բոլոր միջոցները (բարձրորակ սերմացու, տեխնիկա և այլն) այդ խնդիրը հաջողությամբ լուծելու համար: Դա հնարավորություն կտա պատվով կատարելու պլենումի առաջադրանքները՝ պետությանը 2 միլիոն փութ հացահատիկ վաճառելու մասին:

Մշտապես ուշադրության կենտրոնում ունենալով ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի ցուցումն այն մասին, որ հարկավոր չեն այնպիսի պարտավորություններ, որոնք ռեալ չեն, պարտիական կազմակերպությունները պետք է վճռական պայքար կազմակերպեն հնարավորություններից ցածր պարտավորություն

ստանձնելու արդեն զգացվող վտանգավոր տրամադրությունների դեմ։ Գյուղատնտեսության վերելքի համար ծավալված համաժողովրդական պայքարում միայն քաղքենիները կարող են հանգիստ կյանք երազել ցածր պարտավորությունների ստվերաշատ անդորրում։

ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումը որոշեց այս տարվա հոկտեմբերի 17-ին հրավիրել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հերթական XXII համագումարը։ Պարտիայի Կենտկոմի պլենումի այդ որոշումը բուռն խանդավառությամբ ընդունեցին մեր երկրի աշխատավորները։ Ամբողջ երկրով մեկ լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը։ Սովետական մարդիկ արձագանքելով պարտիայի կոչին, հայրենասիրական մեծ գործեր են կատարում ՍՄԿԿ XXII համագումարը արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի, գիտության զարգացման բնագավառում նորանոր հաջողություններով դիմավորելու համար։

Պլենումի առաջադրած խնդիրների կենսագործման համար անհրաժեշտ է մոբիլիզացնել բոլոր ուժերը, օգտագործել բոլոր հնարավորություններն ու ռեզերվները, ցուցաբերել ավելի մեծ հմտություն ու գործիմացություն։ Կոմունիստները պետք է գտնվեն պլենումի որոշումների կատարման համար ծավալվող պայքարի ամենաառաջավոր և ամենապատասխանատու տեղամասերում։ Պարտիական կազմակերպությունները պետք է մեկ անգամ ևս զբաղվեն կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխման հարցով, ետ մնացող տեղամասերը գործուղեն այնպիսի մարդկանց, որոնք ի վիճակի են լուծելու առաջադրած խնդիրները։

Այժմ պարտիական քաղաքական աշխատանքում հիմնական խնդիրը պլենումի որոշումների, պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովի ելույթի և պլենումի մյուս նյութերի պրոպագանդայի կազմակերպումն է։ Հարկավոր է օգտագործել քաղաքական աշխատանքի բոլոր լծակները պլենումի որոշումները աշխատավորության լայն զանգվածներին լուսաբանելու, նրանց աշխատանքային նորանոր սխրագործությունների ոգեկոչելու համար։

Վերջերս ավարտված Անդրկովկասյան ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունը Ն. Ս. Խրուշչովի մասնակցությամբ, մի խորհրդակցություն, որը եղբայրական ժողովուրդների ստեղծարար բարեկամության մի վառ ցուցադրում հանդիսացավ, կոլտնտեսային գյուղի աշխատավորների անունից հավաստիացրեց պարտիային ու կառավարությանը, որ Անդրկովկասի աշխատավորները ջանք չեն խնայի լիովին կենսագործելու ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումի ծրագրային որոշումները։ Վեր է կասկածից, որ խորհրդակցության ընդունած դիմումը Անդրկովկասի գյուղատնտեսության աշխատավորներին՝ իր հետևողական կիրառումը կգտնի Հայաստանի բոլոր կոլտնտեսություններում և սովխոզներում։

---



# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՐՏՔԸ

## Բ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

*Ոչ թե Օլիմպոսի աստվածները, այլ հինգ մայր ցամաքների կոմունիստների ներկայացուցիչները, կանխատեսելով ապագան, այն լուսավորեցին խաղաղության և առաջադիմության հաղթանակի նկատամամբ վառ հավատով։ Մեծ փորձությունների ժամին նրանք արիաբար և հանդիսավոր կերպով հայտարարեցին, որ իրենք պատասխանատու են մարդկության ճակատագրի համար և, իրենց հատուկ վճռականությամբ, ժողովուրդներին մարտի կոչեցին ընդդեմ նոր պատերազմի սպառնալիքի, հանուն խաղաղության։*

*Հայտարարելով, որ իրենք պատրաստ են բոլոր ուժերն ու եռանդը նվիրել համաշխարհային նոր պատերազմի մղձավանջից մարդկությանն ազատելու պատմական մեծ միսիայի իրականացմանը, բոլոր երկրների կոմունիստական պարտիաները միջուկային պատերազմի դեմ մղվող մեծ ճակատամարտի կշեռքի նժարին դրեցին մի ծանրություն, որին վիճակված է վճռականորեն ազդել մարդկության ապագայի վրա։*

***

*Համաշխարհային պատմության որևէ ժամանակաշրջանում չի եղել ոչ մի պրոբլեմ, որին միաժամանակ գամված լիներ բոլոր երկրների ժողովուրդների ուշադրությունը։ Նույնիսկ պատերազմի պրոբլեմը՝ հնագույն և կարևոր պրոբլեմներից մեկը, որն իր մահաբեր տեսքով պարբերաբար ծառանում էր տարբեր երկրների դարբասների առջև, չէր կարող դառնալ բոլոր ժողովուրդների միաժամանակյա հոգսի առարկան։ Միայն արդի դարաշրջանում, երբ ստեղծված են մասսայական ոչնչացման ու ավերման ահռելի միջոցներ, որոնց կիրառումը նոր պատերազմում կարող է չտեսնված վնասներ պատճառել բոլոր երկրների միլիոնավոր մարդկանց (այդ թվում նաև պատերազմին չմասնակցող երկրներում), պատերազմի և խաղաղության պրոբլեմը դարձել է աշխարհի բոլոր երկրների բնակչության առաջնահերթ մտածմունքի առարկա։*

*Ահա թե ինչու կոմունիստները, որոնք իրականում ամենավճռական մարդիկ են, զինված հասարակական կյանքի խոր ըմբռնմամբ, կոչված են գլխավորելու և ամենուր գլխավորում են արդիականության պրոբլեմների լուծման համար ծավալվող շարժումը։ Կոմունիստներն են այժմ գլխավորում պայքարն ընդդեմ համաշխարհային նոր պատերազմի, որի կրողն ամբողջ մարդկության համար լուրջ վտանգ ներկայացնող իմպերիալիզմն է։*

Բոլոր անտագոնիստական հասարակարգերին հատուկ պատերազմներն իրենց գագաթնակետին հասան կապիտալիզմի դարաշրջանում։ Ակնհայտ դարձավ, որ մարդու կողմից մարդու շահագործման սիստեմը և մարդու կողմից մարդու ոչնչացման սիստեմը կապիտալիստական կարգերի երկու կողմերն են։ Կապիտալիզմի գոյության բարձրագույն և վերջին ստադիան, սոցիալական ուրիշ շատ այլանդակություններից բացի, նշանավորվեց համաշխարհային երկու ավերիչ պատերազմներով։ Առաջինում ոչնչացան այնքան մարդիկ, որքան վերջին հազար տարում Եվրոպայում տեղի ունեցած բոլոր պատերազմներում։ Պատերազմի վրա ծախսվեց 208 միլիարդ դոլար։ Զոհվեցին 10 միլիոն և վիրավորվեցին 20 միլիոն մարդ։ Իսկ երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում (ՄԱԿ-ի տվյալներով) սպանվեցին 32 միլիոն զինվոր, ռմբակոծությունների հետևանքով քաղաքացիական բնակչությունից զոհվեցին 25 միլիոն մարդ։ 29 միլիոն մարդ վիրավորվեցին և դարձան խեղանդամ։ Այժմ իմպերիալիզմը սպառնում է մարդկությանը նետել է՛լ ավելի սարսափելի աղետի՝ երրորդ համաշխարհային պատերազմի մեջ՝ ջերմամիջուկային զենքի կիրառմամբ։

Հետպատերազմյան իմպերիալիզմի խտացրած արտահայտությունը հոգեվարքի մեջ գտնվող ամերիկյան իմպերիալիզմն է, որը պատրաստ է մարդկության նկատմամբ կատարել ամեն մի հանցագործություն՝ հանուն մեռնող կապիտալիստական հասարակարգի փրկության։ Ագրեսիայի ու պատերազմի այդ գլխավոր ուժն իր քաղաքականության մեջ մարմնավորել է ռազմաշունչ ռեակցիայի գաղափարախոսությունը։ «Կոմունիզմի սպառնալիքից» պաշտպանվելու պատրվակով ամերիկյան իմպերիալիզմը, Անգլիայի, Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի իմպերիալիստների մասնակցությամբ, շատ երկրների ներքաշել է ՆԱՏՕ, ՍԵՆՏՕ, ՍԵԱՏՕ և այլ ռազմա-քաղաքական բլոկների մեջ, նրանց խճճել սոցիալիզմի դեմ ուղղված պայմանագրերի և ռազմական բազաների ոստայնով։

Արևմտյան Գերմանիայում և Հեռավոր Արևելքում միլիտարիզմի և ռևանշիզմի վերածնման միջոցով համաշխարհային սոցիալիստական սիստեմի թևերում ստեղծելով «հարվածող ուժեր», Միացյալ Նահանգները ո՛չ միայն ոտնահարել են կախյալ պետությունների սուվերենությունը, այլև սպառնում են այդ երկրների ժողովուրդների բուն գոյությանը, որի հետևանքով ակտիվ գործունեություն են ծավալել հակամիլիտարիստական ուժերը, որոնք ընդունակ են ձախողելու խաղաղության ու առաջադիմության թշնամիների նողկալի դիտավորությունները։

Միացյալ Նահանգների կառավարող շրջանների գործունեությունը, որոնք երկրորդ համաշխարհային պատերազմից հետո իրենց արտաքին քաղաքականության նպատակը համարեցին այն «տենդենցի» կենսագործումը, որը վերջին հաշվով պետք է «ավարտվի կամ Սովետական իշխանության ոչնչացմամբ, կամ նրա աստիճանական վերացմամբ» (Ջ. Քեննան), այնքան ավելի ոչ ռեալիստական և անխոհեմ է դառնում, որքան ավելի ակնհայտ և զգալի են դառնում այդ քաղաքական կուրսի ձախողումները։

Այնուամենայնիվ, ամերիկյան իմպերիալիզմը դեռևս չի հրաժարվում «սառը պատերազմի» իր կուրսից։ Գերշահույթների տենչով տարված՝ նա ավելացնում է սպառազինությունների մրցավազքը, որն ապահովում է «դեղին սատանայի պարը»՝ չտեսնված շահույթները։ Բայց համաշխարհային նոր



պատերազմը հանցագործ կապիտալի համար կդառնա կախաղան։ Սպառազինությունների մրցավազքից ստացված վիթխարի շահույթների միջոցով մի բուռ ամերիկյան միլիարդատերեր գլխավորում են ժամանակակից բուրժուական ամբողջ հասարակությունը, որը պահվում է մոնոպոլիաներին ենթակա պետական մեխանիզմի հենակներով։ Անհամեմատելի են ռազմական պատվերներով զբաղված մոնոպոլիաների շահույթները։ Այսպես, օրինակ, եթե ԱՄՆ-ի 500 խոշոր արդյունաբերական կորպորացիաների շահույթի նորման հավասար է ներդրված կապիտալի 11,4 տոկոսին (հարկերը հանելուց հետո), ապա ռազմա-արդյունաբերական առաջատար տասը կորպորացիաների համար այն կազմում է միջինը 17,9 տոկոս, իսկ ատոմահրթիռային բիզնեսի առաջատար երեք ընկերությունների համար՝ արդեն 20,4 տոկոս։ Ահա թե ինչու ԱՄՆ-ում գրեթե բոլոր փոքր-ինչ խոշոր կորպորացիաները ձգտում են մասնակից դառնալ ռազմական բիզնեսին։ Ահա թե ինչու Միացյալ Նահանգների ֆինանսական օլիգարխիայի հիմնական խմբերը սերտորեն կապված են ռազմական բիզնեսի հետ։ Օրինակ, «Ֆերստ նեշնլ սիտի բենկ»-ը իրականացնում է մի շարք ֆիրմաների բանկային գործառնությունները, մորգանները «Ջեներալ էլեկտրիկ»-ի առաջատար ուժն են, իսկ կալիֆոռնիական խումբը՝ «Լոքհիդ» կորպորացիայի. ռոքֆելլերները սերտորեն կապված են «Մարտին» և այլ ընկերությունների հետ, որոնք զբաղված են հրթիռների արտադրությամբ։ Իսկ չէ՞ որ «երկրորդ սերնդի» յուրաքանչյուր միջմայրցամաքային հրթիռ ԱՄՆ-ում արժե 35 միլիոն դոլար։ Փիլիսոփայության և էկոնոմիկայի ամերիկյան պրոֆեսոր Պոլ Կրոսսերի տվյալներով, «երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Միացյալ Նահանգները ոչնչացման միջոցների արտադրության վրա ծախսել են մոտ մեկ տրիլիոն դոլար։ Իսկ Ամերիկայի ազգային ամբողջ սեփականությունը կազմում է մեկ տրիլիոն դոլար»։

Միլիոնավոր և միլիարդավոր շահույթների համար իմպերիալիստները վիժեցնում են զինաթափման վերաբերյալ Սովետական Միության և մյուս խաղաղասեր պետությունների առաջարկները։ Նրանք իրականացնում են սպառազինությունների մրցավազքը, ավելացնում միջուկային զենքի պաշարները, շարունակում պատերազմական պրովոկացիաները, որոնք հղի են միջազգային լուրջ կոնֆլիկտների սպառնալիքով։ Այդ զազրելի գործում Հերոստրատի փառքը պատկանում է ամերիկյան իմպերիալիզմին՝ համաշխարհային ռեակցիայի գլխավոր պատվարին, համաշխարհային ժանդարմին, ամբողջ աշխարհի ժողովուրդների թշնամուն։ Այդ նրա ջանքերով, պրովոկացիաների և ագրեսիվ գործողությունների նրա քաղաքականությամբ էր, որ ձախողվեց կառավարությունների ղեկավարների Փարիզի խորհրդակցությունը, կուրս վերցվեց սրելու միջազգային լարվածությունը և բորբոքելու «սառը պատերազմը»։

Միացյալ Նահանգների ռազմական բիզնեսի պահանջները նորից բավարարվեցին հնազանդ պետական մեխանիզմի կողմից։ Դա «Նյու-Յորք պոստ» թերթի ֆինանսական մեկնաբանին թույլ տվեց հիացմունքով գրել. «Զենքի արտադրության հետ կապված կորպորացիաները կարող են հանգիստ լինել իրենց բիզնեսի համար... «խաղաղության հանդեպ եղած վախին» վերջ է տրված, այդ սպառնալիքը վերացված է»։ ««Զինաթափում» կոչվող դույլեն,— շարունակում է մեկնաբանը,— մենք մղել ենք հետին պլան»։ Բայց նման հրճվանքները հորթային են։

Թե՛ պրովոկացիաները խաղաղության գործի դեմ, թե՛ այդ նողկալի գոր-
ծունեության ջատագովությունը կրկին մերկացրին ամերիկյան իմպերիալիզ-
մը, աշխարհում նրա ունեցած ազդեցությանը հասցվեցին լուրջ հարվածներ։
Իմպերիալիզմն իր բնույթով այսօր շատ ավելի ագրեսիվ է, քան կես
դար առաջ, երբ նախապատրաստում էր առաջին համաշխարհային պատե-
րազմը։ Այն այսօր ավելի ագրեսիվ է, քան քառորդ դար առաջ, երբ աշ-
խարհը մղում էր դեպի երկրորդ համաշխարհային պատերազմ։ Բեռնարդ
Շոուի խոսքերով ասած, միակ դասը, որ պատմությունից սովորեցին իմպե-
րիալիզմի կառավարող շրջանները, դա այն է, որ նրանք պատմությունից ոչ
մի դաս չքաղեցին։

***

Իմպերիալիզմի ագրեսիվ բնույթը չի փոխվել. բայց աշխարհում շատ
բան է փոխվել։ Աշխարհն այժմ այն չէ, ինչ կես կամ քառորդ դար առաջ։
Ծ՛վ աշխարհն է փոխվել, և՛ ժողովուրդների դերը։
Ծնվելով պատերազմների և ռևոլյուցիաների բոցում, անցնելով զար-
գացման մեծ և բարդ ուղի, սոցիալիզմը դարձել է մի հսկա, որի հետ ամբողջ
առաջադեմ մարդկությունն այժմ կապում է բանականության և սոցիալական
արդարության նկատմամբ ունեցած իր հավատը։ Սոցիալիզմը լիովին արդա-
րացրել է XX դարի այն լավագույն մտածողների ակնկալությունները, որոնք
դեռևս Սովետական իշխանության առաջին օրերին, երբ ռուսական և միջազ-
գային բանվորական շարժման այդ նորածին զավակը ետ էր մղում հակա-
ռևոլյուցիայի միացյալ ուժերի զինված հարձակումը, համոզված էին, որ սո-
ցիալիստական ռևոլյուցիան ո՛չ միայն ռուսական, այլև համամարդկային
ճշմարտություն է։ Նրանք կոչ էին անում պաշտպանել պրոլետարական ռևո-
լյուցիան, թույլ չտալ հակառևոլյուցիոն ուժերին խեղդելու այն։
1919 թվականին ֆրանսիական ժողովրդի հավատարիմ զավակ Հանրի
Բարբյուսը «Մենք մեղադրում ենք» հոդվածում գրել է. «Փրկեցե՛ք մարդկային
ճշմարտությունը, փրկելով ռուսական ճշմարտությունը։ Իմացե՛ք, որ ապագա
սերունդները մեր ժամանակի մարդկանց ազնվության մասին կդատեն այն
բանի համեմատ, թե նրանք կարողացե՞լ են արդյոք ոտքի ելնել այդ պահին
և հայտարարել՝ ո՛չ»։
Սովետական ժողովրդի ջանքերով, որին պաշտպանում էր միջազգային
բանվորական և կոմունիստական շարժումը, սոցիալիզմը ո՛չ միայն դուրս
եկավ իր մանկական հասակից, այլև առնանալով ստեղծեց մեծ և համերաշխ
ընտանիք։ Աշխարհի հսկայական մասում, հին փլատակների վրա բարձրացել
է հասարակական առաջադիմության ժամանակակից ամրոցը՝ համաշխարհա-
յին սոցիալիստական սիստեմը։
Համաշխարհային սոցիալիստական համագործակցության երկրների ներ-
սում և այդ երկրների միջև եղած դասակարգային հակամարտության վերա-
ցումը հանգեցրեց այն բանին, որ մեկ միլիարդ բնակչություն ունեցող եր-
կրների տնտեսական, սոցիալական և քաղաքական ուժերը միավորվեցին։
Իմպերիալիզմի փոթորկող օվկիանոսում երբեմնի սոցիալիստական կղզին
դարձել է միաձույլ, մի վիթխարի զանգված, որի հսկայական ափերին զար-
նվելով այսօր փշրվում են իմպերիալիստական պրովոկացիաների ալիքները։



Սոցիալիստական յուրաքանչյուր երկրի և սոցիալիստական ամբողջ լա-
գերի ուժի ու անպարտելիության գլխավոր աղբյուրը կոմունիստական և բան-
վորական պարտիաների, սոցիալիստական երկրների ժողովուրդների համա-
խմբվածության ու միասնության մեջ է։ Համաշխարհային սիստեմ կազմած
սոցիալիստական պետությունների ուժն ու անպարտելիությունը հնարավորու-
թյուն են տալիս նոր ձևով լուծելու արդիականության կարևորագույն պրոբլեմ-
ները, դրանք լուծելու հօգուտ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի
շահերի։ Ահա թե ինչու կոմունիստական և բանվորական պարտիաների ներկա-
յացուցիչների 1960 թվականի խորհրդակցությունն իր Հայտարարության մեջ
ընդգծեց, թե մեր ժամանակի տարբերիչ գիծն այն է, որ համաշխարհային
սոցիալիստական սիստեմը դառնում է մարդկային հասարակության զար-
գացման վճռական գործոնը և հանդիսանում է գլխավոր գրավականը խա-
ղաղության ու հասարակական առաջադիմության համար մղվող պայքարում։
Սոցիալիզմի ծնունդը և զարգացումը, նրա վիթխարի հաղթանակները
չէին կարող հեղափոխիչ ներգործություն չունենալ գաղութային երկրների ժո-
ղովուրդների վրա։ Մեկ միլիարդ մարդկանց կյանքում տեղի ունեցած սոցիա-
լական ամենախոր հեղաշրջումը քաղաքական նիրհից սթափեցրեց գաղութ-
ների ժողովուրդներին։ Արթնանալով «Ավրորայի» հրանոթների համազարկի
հրացոլքից և անցնելով հակագաղութային պայքարի դպրոցը, նրանցից շա-
տերը ձեռք բերեցին ազգային ազատություն։ Աշխարհի շատ մասերում հաղ-
թանակեցին ազգային ազատագրական ռևոլյուցիաները։ Վերջին 15 տարում
Ասիայում և Աֆրիկայում առաջացան մոտ 40 նոր սուվերեն պետություններ։
Կուբայի ռևոլյուցիայի հաղթանակը հզոր խթան հանդիսացավ հանուն լիա-
կատար ազգային ազատագրության Լատինական Ամերիկայի ժողովուրդների
պայքարի համար։ Անխուսափելի է գաղութակալության լիակատար կոր-
ծանումը։
Ազգային ազատագրական շարժման ճնշման տակ գաղութային սարկու-
թյան սիստեմի խորտակումը, որը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի
կազմավորումից հետո երկրորդն է իր պատմական նշանակությամբ, մեծ տե-
ղաշարժերի տեղի տվեց պատերազմի և խաղաղության ուժերի հարաբերակ-
ցության մեջ։ Ազգային, հակաիմպերիալիստական, դեմոկրատական ռևոլյու-
ցիայի խնդիրները հետևողականորեն մինչև վերջ հասցնելու համար գաղութա-
յին ժողովուրդների պայքարը համընկնում է ընդհանուր խաղաղությունն
ապահովելու շահերի հետ, դառնալով համաշխարհային նոր պատերազմը
կանխելու էական գործոններից՝ մեկը։
Սոցիալիստական բոլոր երկրները, միջազգային բանվորական և կոմու-
նիստական պարտիաներն իրենց պարտքն են համարում բարոյական և նյու-
թական օգնություն ցույց տալ իմպերիալիստական ճնշումից ազատագրվելու
համար պայքարող ժողովուրդներին։ Գաղութակալության դեմ մղվող հետևո-
ղական պայքարն այսօր պայքար է նաև միլիտարիզմի և նոր պատե-
րազմի դեմ։
Այլ կերպ ասած, զգալի մասն այն բանի, որի վրա տասնամյակներ շա-
րունակ հենվում էր կապիտալիստական սիստեմը, որի վրա իմպերիալիզմը
հիմնել էր իր իշխանությունը, փուլ եկավ, իսկ այն, ինչ մնացել է, արդեն
խոր կերպով քայքայվել է և գտնվում է հետագա փլուզման վտանգի տակ։
Կապիտալիստական երկրներն այսօր գրավում են 53,5 միլիոն քառակուսի

կիլոմետր, սոցիալիստական երկրները՝ 35,2 միլիոն, գաղութակալությունից
ազատագրված երկրները՝ 21 միլիոն, իսկ այն երկրները, որոնք դեռևս
գտնվում են գաղութային ճնշման տակ՝ մոտ 20 միլիոն քառակուսի կիլոմետր։
Բայց բնակչության թվով հարաբերակցությունը հօգուտ կապիտալիզմի չէ.
կապիտալիստական երկրների բնակչության թիվը կազմում է 824,5 միլիոն
մարդ, սոցիալիստական երկրներինը՝ մեկ միլիարդ մարդ, անկախ նոր պե-
տություններինը՝ 849 միլիոն, գաղութներինը՝ 147 միլիոն մարդ։ Բնակչու-
թյան թվով սոցիալիստական լագերն արդեն գերազանցում է կապիտա-
լիստականին։

Սակայն իմպերիալիզմի դիրքերի խարխլումը որոշվում է ո՛չ միայն իմ-
պերիալիստական տիրապետության ոլորտի էական նեղացմամբ։ Աճում է
կապիտալիստական ամբողջ սիստեմի անկայունությունը, սրվում են նրա բո-
լոր հակասությունները, սահմանափակվում է բուրժուական դեմոկրատիան,
տարածվում կառավարման տոտալիտար մեթոդներ կիրառելու տենդենցը.
խոր ճգնաժամ են ապրում իմպերիալիզմի քաղաքականությունն ու գաղափա-
րախոսությունը։

Կապիտալիզմի փտումը մեծ ուժով դրսևորվում է ժամանակակից իմպե-
րիալիզմի գլխավոր երկրում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում։ ԱՄՆ-ը
տենդի մեջ են ուժեղացող տնտեսական ճգնաժամերից (1961 թվականին
սպասվում է, որ արտադրության անկումը ամենամեծը կլինի հետպատե-
րազմյան ժամանակաշրջանում, այն կկազմի առնվազն 15 տոկոս)։ ԱՄՆ-ին
ցնցում են ուժեղացող դասակարգային մարտերը։ Վերջին երկու տարում այդ
երկիրը քանիցս դարձել է Ամերիկայի բանվորական շարժման պատմության
մեջ ամենանշանավոր գործադուլների թատերաբեմ (500 հազար պողպատա-
ձուլողների չորսամսյա հաղթական գործադուլը, Բոստոնի երկաթուղայինների
և Պենսիլվանիայի երկաթգծի բանվորների գործադուլները, հավասար իրա-
վունքների համար հարավի նեգր բանվորների մարտական ելույթները և
այլն)։ Նվազում է ԱՄՆ-ի դերը միջազգային գործերում։ Եթե հետպատե-
րազմյան 10—15 տարիների ընթացքում Միացյալ Նահանգներն աշխարհում
գրավում էին բացառիկ դիրք, որպիսին չի գրավել ոչ մի երկիր կապիտա-
լիզմի պատմության մեջ, ապա այժմ նրանց դիրքերը խարխլվել են սոցիա-
լիզմի գիտական, տեխնիկական, տնտեսական, ռազմական և քաղաքա-
կան հաջողություններով, ինչպես և արևմտաեվրոպական իմպերիալիստական
տերությունների վերածնման հետևանքով։ Վերջապես, Ուիլյամ Ֆոստերի
պատկերավոր խոսքերով ասած, «շատ երկրներում ռևոլյուցիաները և այլ
կարգի իրադարձությունները փլվածքներ կամ նստվածքներ առաջացրեցին
ամերիկյան հեգեմոնիայի շենքի տարբեր մասերում»։ Այդպես եղավ Թուր-
քիայում և Հարավային Կորեայում, Ճապոնիայում և ուրիշ շատ երկրներում։

Աշխարհում տեղի են ունենում խոր փոփոխություններ, և այդ բոլորը
կապիտալիզմի դատապարտվածության, նրա ավանտյուրիստական քաղաքա-
կանության վկայությունն են։ Բայց այդ բանի հետ չեն ուզում հաշտվել
նրանք, ովքեր սովոր են իրենց տիրապետությունը համարել հավերժական։
Այս տեսակետից բնորոշ է անգլիական փիլիսոփա լորդ Բերտրան Ռասսելի
խոստովանությունը, որը գրել է, թե ինքն անընդունակ է հաշտվելու «կոր-
ծանվող կայսրությունների», «կոմունիզմի», «ատոմային ռումբերի»,
«ասիական ժողովուրդների անչափ պահանջների», «արիստոկրատիայի անկ-



ման» ժամանակակից աշխարհի հետ։ «Այս խորթ անհուսալի աշխարհում,—
գրում է Ռասսելը,—որտեղ հին պետությունները չքանում են ինչպես առա-
վոտյան մառախուղ, հեշտ չի նրանց համար, ովքեր մանկությունից ընտե-
լացել են վաղեմի կայունությանը, հեշտ չէ հավատալ, որ նրանց շրջապա-
տող ամեն բան իրականություն է, և ոչ թե անցողիկ մղձավանջ»։

Այո՛, դա իրականություն է և ոչ մղձավանջ։

***

Նոր ժամանակի, նոր աշխարհի մարդը հաստատ հավատում է բանակա-
նության հաղթանակին՝ խաղաղության և ստեղծագործ աշխատանքի հաղթա-
նակին։ Նա տոգորվում է այդ հավատով, որովհետև, ինչպես ասված է կո-
մունիստական և բանվորական պարտիաների խորհրդակցության Հայտարա-
րության մեջ, արդի դարաշրջանում մարդկային հասարակության պատմական
զարգացման գլխավոր բովանդակությունը, գլխավոր ուղղությունը և գլխավոր
առանձնահատկությունները բնորոշում են համաշխարհային սոցիալիստական
սիստեմը, այն ուժերը, որոնք պայքարում են իմպերիալիզմի դեմ, հանուն հա-
սարակության սոցիալիստական վերակառուցման։ Մարդն ավելի ու ավելի է
համոզվում, որ իմպերիալիզմի ոչ մի ապարդյուն ճիգ չի կարող կասեցնել
պատմության առաջընթաց զարգացումը։ Ժամանակակից աշխարհում ավելի ու
ավելի շատ մարդիկ են սկսում հասկանալ, որ սոցիալիզմի հետագա վճռական
հաղթանակների համար կան կայուն նախադրյալներ, որ նրա լիակատար
հաղթանակն անխուսափելի է։

Այս ամենը, սակայն, չեն վերացնում իմպերիալիզմի դեմ, նրա ներքին
ռեակցիոն և միջազգային ագրեսիվ քաղաքականության դեմ պայքարելու
անհրաժեշտությունը։ Եթե այսօր կոմունիստներն ասում են, թե եկել է ժա-
մանակը, երբ կարելի է կասեցնել իմպերիալիստական ագրեսորների փորձե-
րը՝ սանձազերծելու համաշխարհային նոր պատերազմ, նրանք բնավ նկատի
չունեն խաղաղության ճակատագրական անխուսափելիությունը։ Կոմունիստ-
ները բացահայտ հայտարարում են, որ համաշխարհային նոր պատերազմը
կարելի է կանխել միայն պայքարով, միայն համաշխարհային սոցիալիստա-
կան լագերի, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական
շարժման, պատերազմի դեմ հանդես եկող բոլոր երկրների միասնական
ջանքերով։

Այսօր նույնպես, ինչպես և կես ու քառորդ դար առաջ, կոմունիստ-
ները կոչ են անում պայքարել իմպերիալիզմի դեմ, իմպերիալիստական
պատերազմների դեմ։ Համաշխարհային պատերազմի վտանգը վերացնելու
հիմնական մեթոդը կոմունիստների համար եղել և մնում է պայքարը։
Միայն պայքարի միջոցով կարելի է սանձել ագրեսորներին, կանխել պատե-
րազմը, թույլ չտալ, որ այն բռնկվի. այս է կոմունիստների գիտական հետե-
վողությունը, որը բխում է մարքսիստական տեսությունից և բանվոր դասակար-
գի պայքարի պրակտիկայից։

Պայքարը կազմում է նաև հասարակական-քաղաքական տարբեր կարգ
ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի հիմ-
նական բովանդակությունը։ Եվ դրանում ոչ մի հակասություն չկա։ Խաղաղ
գոյակցության համար պետք է պայքարել, հարկավոր է հաղթահարել ագրե-

սիվ տենդենցի գործողությունը իմպերիալիստական պետությունների քաղա-
քականության մեջ։

Համաշխարհային երկու պատերազմների միջև ընկած ժամանակամիջո-
ցում խնդիրը հանգում էր այն բանին, որ խաղաղ դադարը հնարավորին չափ
ավելի երկար տևի։ Այն ժամանակ ռեալ ուժեր չկային, որոնք ընդունակ լի-
նեին բացառելու համաշխարհային պատերազմը։ Այժմ, երբ ռեալ է դառնում
համաշխարհային պատերազմի կանխման հնարավորությունը, խաղաղ գո-
յակցության լենինյան սկզբունքը դրսևորվում է որպես կապիտալիզմի դեմ
սոցիալիզմի մղած դասակարգային պայքարի ձև։ Այդ պայքարը տեղի է
ունենում բոլոր բնագավառներում՝ քաղաքական, տնտեսական և գաղափա-
րական։

Դեռևս Սովետական իշխանության արշալույսին, մշակելով բուրժուական
պետությունների հետ Սովետական պետության փոխհարաբերությունների
սկզբունքները, Լենինն ընդգծում էր, որ միայն իմպերիալիստական ռեակ-
ցիայի դեմ մղվող ուժեղ պայքարի միջոցով կարելի է կապիտալիստական
երկրների կառավարող շրջաններին հարկադրել պահպանելու խաղաղությունը։
Հարկադրել պատերազմի նախապատրաստության գաղտնիքը մերկացնելու և
հակամիլիտարիստական բոլոր ուժերը մոբիլիզացնելու միջոցով։ Դա է սո-
ցիալիզմի հիմնական խնդիրը իմպերիալիզմի դեմ մղվող քաղաքական պայ-
քարում։

Ահա թե ինչու ՄԱԿ-ի XV սեսիայում հանդես գալով ընդհանուր ու լրիվ
զինաթափման և գաղութային բոլոր ժողովուրդներին ազատություն ու ան-
կախություն տալու պահանջով, Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ-ի անունից ո՛չ միայն
առաջ քաշեց կայուն խաղաղություն ապահովելու ընդարձակ ծրագիրը, այլև
վճռականորեն մերկացրեց միջազգային անվտանգության հակառակորդներին,
նրանց անվայելուչ գործունեությունը, որի հետևանքով ձախողվեց բարձր
ոլորտի Փարիզի խորհրդակցությունը։ Ահա թե ինչու այսօր, երբ ամերիկյան
իմպերիալիստական ծովահենչի շոշափուկները պտտվում են Կուբայի շուրջը,
երբ թափվում է Կոնգոյի ու Լաոսի բազմաչարչար, բայց մարտնչող ժողո-
վուրդների արյունը, կոմունիստական ճշմարտության սրով մերկացվում է
ԱՄՆ-ի գաղութային քաղաքականության գարշելի էությունը և խափանվում
նրա գործունեությունը։

Պաշտպանելով խաղաղ գոյակցության սկզբունքները՝ կոմունիստները
ձգտում են ամբողջովին դադարեցնել «սառը պատերազմը», ցրել ռազմական
բլոկները, վերացնել ռազմական բազաները, միջազգային վերահսկողությամբ
կատարել ընդհանուր և լրիվ զինաթափում, միջազգային վիճելի հարցերը լու-
ծել բանակցությունների միջոցով։ Նրանք պահանջում են հարգել պետու-
թյունների իրավահավասարությունը, նրանց տերիտորիալ ամբողջականու-
թյունը, անկախությունն ու սուվերենությունը, չմիջամտել միմյանց ներքին
գործերին, աշխատում են լայնորեն զարգացնել առևտրական, կուլտուրական,
գիտական կապերը ժողովուրդների միջև։

Խաղաղ գոյակցությունը կապիտալիզմի հետ սոցիալիզմի դասակարգա-
յին պայքարի ձև է նաև տնտեսական բնագավառում։ Կոմունիստները հիա-
նալի գիտեն, որ խաղաղության պահպանման գործում գլխավոր նշանակու-
թյուն կունենա համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամ-
րապնդումը։ Միաժամանակ, կոմունիստները տեսնում են, որ եկել է հակա-



դիր սիստեմների պատմական մրցության այնպիսի ժամանակաշրջան, երբ
կոմունիզմի վերջնական հաղթանակի զենքը դառնում է ամբողջ բնակչության
նյութական և հոգևոր պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարման
օրինակի ուժը։ Լենինը կանխատեսում էր պատմության այդ վճռական ժա-
մանակաշրջանի գալուստը։ Հիմնավորելով խաղաղ գոյակցության գաղափա-
րը որպես երկու սիստեմների պայքարի հատուկ ձև, նա ասում էր, որ այդ
մրցությունը, «...երկու եղանակների, երկու ֆորմացիաների, երկու տնտե-
սությունների՝ կոմունիստականի և կապիտալիստականի մրցություն է։ Մենք
կապացուցենք, որ մենք ավելի ուժեղ ենք»։

Այսօր սոցիալիզմն արդեն իմպերիալիստական երկրներին գերազանցում
է ո՛չ միայն բնակչության թվով, ո՛չ միայն ռազմական ուժով, ո՛չ միայն ար-
տադրության աճի տեմպերով, այլև շուտով կապիտալիզմին կգերազանցի
արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ։ Այն ժամանակ ռեալ
հնարավորություն կստեղծվի հասարակության կյանքից բացառելու համաշ-
խարհային պատերազմը։ Դրանում է սոցիալիզմի տնտեսական հզորության
զարգացման պատմական մեծ իմաստը։

Վերջապես, սոցիալիստական տարբեր կարգ ունեցող պետությունների
խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը ենթադրում է անշեղորեն ուժե-
ղացնել կոմունիստական գաղափարախոսության պայքարն ընդդեմ իմպե-
րիալիզմի գաղափարախոսության։ Միջազգային հարաբերությունների ոլոր-
տում իմպերիալիստական գաղափարախոսության ռեակցիոն բնույթը, որը
երևան է գալիս ուժի և պատերազմի ջատագովության մեջ, հակադիր է սո-
ցիալիստական գաղափարախոսությանը, որը հետևողականորեն պաշտպա-
նում է խաղաղության և ժողովուրդների բարեկամության գաղափարը։ Այս-
տեղից էլ բխում է կոմունիստների պայքարի անխուսափելիությունը հանուն
խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հաղթանակի։

Կոմունիստների կարևորագույն հոգսը ժողովուրդների խաղաղությունն է,
որի մասին այս տարվա նախօրյակին նորից խոսեցին հինգ մայր ցամաքնե-
րի կոմունիստները։ «Կոմունիստները,—ասված է խորհրդակցության Հայտա-
րարության մեջ,—իրենց պատմական միսիան տեսնում են ո՛չ միայն այն
բանում, որ վերացնեն շահագործումը և աղքատությունը. համաշխարհային
մասշտաբով և մարդկային հասարակության կյանքից ընդմիշտ բացառեն
ամեն մի պատերազմի հնարավորությունը, այլ արդեն արդի դարաշրջանում
մարդկությանն ազատեն համաշխարհային նոր պատերազմի մղձավանջից։
Բոլոր երկրների կոմունիստական պարտիաներն իրենց ամբողջ ուժն ու եռան-
դը կնվիրեն պատմական այդ մեծ միսիայի իրականացմանը»։

Ինչպես պաթետիկ պոեմում, ամբողջ աշխարհով կրկին հնչեց կոմու-
նիստների ձայնը, մարդկային խղճի, նրա հզոր ուժերի, նրա մեծ հույսերի
ձայնը։

Կատարելով իրենց սրբազան պարտքը, կոմունիստները երդվեցին ամեն
ինչ անել մարդկությանը ժամանակակից պատերազմի սարսափներից փրկե-
լու համար։

խմբակի պրոպագանդիստը կոլտնտեսության նախագահ Ռ. Ասատրյանն
։ Նա գյուղատնտես է և լավ գիտի կոլտնտեսային արտադրությունը, հմտո-
րեն գլխավորում է աշխատանքները և վայելում կոլտնտեսության անդամ-
ների հարգանքն ու համակրանքը։ Խմբակի անդամներին բացատրելով սո-
ցիալիստական էկոնոմիկայի, կոլտնտեսային արտադրության հիմնական
սկզբունքները, պարտիայի և կառավարության որոշումները, ընկ. Ասատրյա-
նը ընդհանուրից գնում է դեպի կոնկրետը՝ վերլուծում է կոլտնտեսության
աշխատանքները։ Այստեղ ուշագրավ է այն, որ պրոպագանդիստը, տեսու-
թյունը կապելով կոլտնտեսության առօրյա խնդիրների հետ, չի ընկնում մյուս
ծայրահեղության մեջ (մի բան, որը մեզանում հաճախ է պատահում)՝ խմբա-
կի պարապմունքը չի վերածում արտադրական խորհրդակցության։ Իրենց կոլ-
տնտեսության աշխատանքների կոնկրետ վերլուծության միջոցով խմբակի
անդամները խորապես յուրացնում են կոնկրետ էկոնոմիկայի հարցերը և
պատկերացնում իրենց առջև դրված խնդիրների իրագործման ուղիները։

Ամենևին պատահական չէ, որ Խաչիկ գյուղի կոլտնտեսությունն արտա-
դրական լավ ցուցանիշներ ունի։ Կոլտնտեսությունը գերակատարել է խոշոր
և մանր եղջերավոր անասունների, խոզերի գլխաքանակի, ինչպես նաև թռչ-
չունների ավելացման գծով վերցված սոցիալիստական պարտավորությունը։
Գերակատարված են նաև պարտավորությունները մսի, ձվի, կաթի արտա-
դրության գծով։ Եթե կոլտնտեսության խաղողի այգիների մեկ հեկտարի մի-
ջին բերքատվությունը 1959 թվականին 23 ցենտներ էր, 1960 թվականին այն
հասավ մինչև 60-ի։ 1959 թվականին պատրաստված 228 տոննա եգիպտա-
ցորենի սիլոսի դիմաց 1960 թվականին պատրաստվեց 560 տոննա։ Մի տար-
վա ընթացքում մեկ կովի կաթնատվությունն ավելացավ մոտ 250 լիտրով։
Կոլտնտեսությունը կառուցել է ջրապոմպային կայան և ոռոգել 70 հեկտար
հող, որի շնորհիվ ստացել է մեկ միլիոն ռուբլու լրացուցիչ եկամուտ։

Նման օրինակները քիչ չեն։ Սակայն չի կարելի ասել, թե բոլոր պրոպա-
գանդիստներն էլ կարողանում են տեսությունը կապել կյանքի, պրակտիկայի
հետ։ Պրոպագանդիստներից շատերը վատ գիտեն էկոնոմիկան, տնտեսական
կոնկրետ հարցերը և արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրու-
թյան բարելավման ուղիները։ ՀԿՊ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտա-
ցիայի բաժինը տնտեսագիտական տարրական խմբակների ու դպրոցների ղե-
կավարների համար կազմակերպել է կարճատև դասընթացներ, ուր ընդգրկվել
են ավելի քան 500 հոգի։ Նախատեսվել է Երևանի, Լենինականի և Կիրովա-
կանի քաղաքային կոմիտեներին կից ստեղծել միամյա դասընթացներ, որտեղ
առանց արտադրությունից կտրվելու պատրաստել ղեկավարներ՝ տնտեսագի-
տական խմբակների ու սեմինարների համար։ ՀԿՊ Կենտկոմի և Երքաղկոմի
բաղկացած բուհական հեռակա ֆակուլտետների սկզբունքներով ստեղծվելու
են պրոպագանդիստների պատրաստման երկամյա դասընթացներ։

Պարտիական կոմիտեները կիրառում են պրոպագանդիստների հետ տար-
վող խմբակային և անհատական աշխատանքի տարբեր ձևեր՝ հաշվի առնելով
նրանց գիտելիքների տարբեր մակարդակը և պահանջները։ Այդ գործում մեծ
դեր են խաղում պարտիական քաղկոմների ու շրջկոմների քաղլուս կաբի-
նետները, ինչպես նաև հասարակական հիմունքներով գործող քաղլուս կաբի-
նետների լայն ցանցը։

Պրոպագանդիստներին կոնկրետ օգնություն են ցույց տալիս մեթոդական



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՀԱՄԱՐ

Ռ. ՍԱՄՍՈՆՈՎ

ՍՄԿՊ Կենտկոմի 1960 թվականի հունվարի «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» հայտնի որոշումը կարևորագույն դեր խաղաց պարտիական կազմակերպությունների գաղափարական ողջ աշխատանքները բարելավելու գործում։

Հանրագումարի բերելով հիշյալ որոշման կենսագործման արդյունքները, առաջին հերթին պետք է նշել, որ ամրապնդվել է պարտիական պրոպագանդայի կապը կյանքի հետ, կոմունիստների ու անպարտիական լայն խավերի շրջանում աճել է հետաքրքրությունը մարքս-լենինյան տեսության ուսումնասիրման նկատմամբ։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշման մեջ առաջ քաշված կարևորագույն խնդիրների լուծման համար անհրաժեշտ է, որ մեր պրոպագանդիստները ոչ միայն խորապես իմանան տեսական հարցերը, մասնագիտանան իրենց առարկայի մեջ, այլև լավ պատկերացնեն արտադրական-տնտեսական այն խնդիրները, որոնք դրված են երկրի, ռեսպուբլիկայի, քաղաքի, շրջանի, տվյալ ձեռնարկության կամ կոլտնտեսության առաջ։

Յուրաքանչյուր պրոպագանդիստի համար պետք է պարզ լինի, որ պրոպագանդիստական աշխատանքի պրոցեսում տեսության և կյանքի կենսական հարցերի միջև եղած կապի իրագործումը չի սահմանափակվում միայն տեսական հարցերի ուսումնասիրման ժամանակ կյանքից, մեր առօրյա գործունեությունից օրինակներ բերելով, թեև այդ նույնպես կարևոր ու անհրաժեշտ է։ Գլխավորը աշխատավորության քաղաքական գիտակցության և աշխատանքային ակտիվության բարձրացման ճանապարհով յուրաքանչյուր բրիգադայի, կոլտնտեսության, սովխոզի առջև դրված տնտեսական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման հասնելն է։

Ինչ խոսք, մեզանում քիչ չեն տեսականորեն պատրաստված և արտադրության մեջ անմիջականորեն աշխատող պրոպագանդիստներ, որոնք կարողանում են տեսական դրույթները հաջողությամբ շարադրել, օգտագործելով կյանքից վերցված բազմաթիվ օրինակներ։

Առանձնապես խրախուսելի է, երբ ինքը՝ պրոպագանդիստը, գործարանի դիրեկտորն է, գլխավոր ինժեները, ցեխի պետը, կոլտնտեսության նախագահը կամ բրիգադավարը։ Վերջին ժամանակներս պրոպագանդիստական աշխատանքի ներգրավվեցին մեծ թվով ղեկավար աշխատողներ և այդ զգալիորեն նպաստեց պարտիական պրոպագանդան կյանքին մոտեցնելու գործին։ Այս տեսակետից լավ օրինակ է Եղեգնաձորի շրջանի Խաչիկ գյուղի գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակի փորձը։

խորհուրդներն ու խմբերը, որոնք ստեղծվել ու գործում են պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեների ու խոշոր պարտիական կազմակերպությունների քաղլուս կաբինետներում։ Յուրաքանչյուր մեթոդական խմբում ընդգրկված են 12—20 փորձված պրոպագանդիստներ։ Մեթոդական խորհուրդների ու խմբերի անդամները սիստեմատիկաբար լինում են պարտիական կազմակերպություններում, լսում են սեմինարների ու խմբակների պարապմունքները, իրենց խորհուրդներով օգնում պրոպագանդիստներին, ընդհանրացնում ու տարածում են լավագույն պրոպագանդիստների փորձը։

Պրոպագանդիստական կադրերի որակավորման ուղղությամբ պարտիական կազմակերպությունների հետևողական աշխատանքը տվեց իր արդյունքը։ Այժմ պրոպագանդիստական կադրերի 96 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։ Անցյալ ուսումնական տարվա համեմատությամբ այս տարի պրոպագանդիստական աշխատանք են կատարում 2,5 անգամ ավելի շատ ինժեներներ, բժիշկներ, գյուղատնտեսներ, անասնաբույժներ և այլ մասնագետներ։

Կոմունիստների և անպարտիականների՝ տնտեսագիտական գիտելիքներին տիրապետելը կարևոր նշանակություն ունի պրոպագանդան կյանքի հետ կապելու գործում։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմը մշակել և իրագործում է մի շարք միջոցառումներ տնտեսական գիտելիքների պրոպագանդան ուժեղացնելու, լայն մասսաներին տնտեսագիտական ուսուցման մեջ ներգրավելու ուղղությամբ։ Պարտլուս ցանցում այժմ լայնորեն ուսումնասիրվում է մարքս-լենինյան տնտեսագիտությունը, արդյունաբերության և գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկան։ Անցյալ ուսումնական տարվա համեմատությամբ ընդլայնվել է տնտեսագիտությունը և կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների ու դպրոցների ցանցը։ Կազմակերպվել են տնտեսագիտական, տեխնիկայի առաջադիմության, գիտության ու տեխնիկայի 15 համալսարաններ։ Երևանում ստեղծվել է տնտեսագիտական երկամյա համալսարան, ուր ընդգրկվել են հիմնարկ-ձեռնարկությունների 300 ղեկավար աշխատողներ։ Տնտեսագիտության ինքնուրույն ուսումնասիրողների թիվը ավելացել է մոտ 5 հազարով։

Ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում տնտեսագիտությունը և կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրողների համար սկսել են ավելի հաճախ կազմակերպել դասախոսություններ, տնտեսագիտական և գիտա-արտադրական կոնֆերանսներ և այլն։ Հոկտեմբերյանում, Արտաշատում, Վեդիում և ռեսպուբլիկայի մի շարք այլ շրջաններում գյուղատնտեսական գիտելիքների և առաջավոր փորձի ուսումնասիրման նպատակով ստեղծվել են ակումբներ։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը հատուկ ուշադրություն նվիրեց աշխատանքի առաջավոր փորձի տարածմանը։ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը նախատեսել է այդ ուղղությամբ անցկացնել մի շարք միջոցառումներ. ստեղծել գրքույկների սերիա, գունեղ պլակատներ, փոկումենտալ կինոնկարներ և այլն։ Առաջավորների աշխատանքի փորձը պետք է դառնա լայն մասսաների սեփականությունը։ Այդ է մեր գրավոր ու բանավոր պրոպագանդայի հիմնական խնդիրներից մեկը։



Քաղաքական լուսավորության ցանցի աշխատանքները բարելավելու նպատակով այս ուսումնական տարվա ընթացքում ռուսերենից թարգմանվել են «Քաղաքական գիտելիքների հիմունքները», Պ. Ի. Նիկիտինի «Քաղաքատնտեսություն» մատչելի ձեռնարկը, «Քաղաքատնտեսություն» աշխատության 3-րդ հրատարակությունը, «Մարքսիզմ-լենինիզմի հիմունքները», «Սոցիալիստական արդյունաբերության ձեռնարկությունների էկոնոմիկան», «Սովետական առևտրի էկոնոմիկան» աշխատությունները։ Թարգմանվել և շուտով հրատարակման կհանձնվեն «Վ. Ի. Լենինի կենսագրությունը», «Շինարարության էկոնոմիկան» աշխատությունները։

1960 թվականին ռեսպուբլիկայում հրատարակվել են 16 գիրք և գրքույկ՝ նվիրված էկոնոմիկայի հարցերին, արտադրության առաջավորների և տնտեսական գիտելիքների պրոպագանդայի փորձին։ «Տնտեսական գիտելիքներ յուրաքանչյուր բանվորին ու կոլտնտեսականին» սերիայով հրատարակվել է 6 գրքույկ։

Ռեսպուբլիկական, քաղաքային ու շրջանային թերթերը, ինչպես նաև ամսագրերը, ռադիոն ու հեռուստատեսությունը սկսել են ավելի լուրջ ուշադրություն հատկացնել սոցիալիստական մրցության և արտադրության առաջավորների փորձի տարածման հարցերին։ Պարտիական-քաղաքական աշխատանքներում սկսել է կարևոր տեղ գրավել կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի և հարվածայինի կոչման համար ծավալված շարժումը։ Կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների փորձի տարածման նպատակով Հայպետհրատը «Կոմունիստական աշխատանքի մարդիկ» և «Մեր օրերի հերոսները» սերիայով հրատարակել է 7 գրքույկ։

ՍՄԿՊ Կենտկոմի «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» որոշումից հետո ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները լուրջ քայլեր են արել պարտիական պրոպագանդայի ազդեցության ոլորտը ավելի ընդլայնելու համար։

Անցյալ տարի պարտիական լուսավորության ցանցում ուսանում էին 100 հազար, իսկ այս տարի՝ 132 հազարից ավելի կոմունիստներ և անպարտիականներ։ Հատկապես մեծ թվով անպարտիականներ են ընդգրկվում դասախոսական պրոպագանդայի ոլորտում։ Այսպես, օրինակ՝ 1960 թվականին պարտիական կոմիտեների և քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության դասախոսական խմբերի միջոցով բնակչության համար կարդացվել է 62 հազար դասախոսություն։ Աշխատավորների առաջ դասախոսություններով սիստեմատիկաբար հանդես են գալիս պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողները։ Պարտիայի շրջկոմների, քաղկոմների, ինչպես նաև քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության դասախոսական խմբերը ավելի ու ավելի են համալրվում ժողովրդական տնտեսության որակյալ կադրերով։

Պարտիական կազմակերպությունները ձգտում են ամեն կերպ կիրառել դասախոսական պրոպագանդայի նոր ձևերը։ Այսպես, օրինակ՝ 1960 թվականին ռեսպուբլիկայի բժիշկների, ինժեներների և բնակչության այլ խավերի, հատկապես երիտասարդության համար կազմակերպվել են ավելի քան 200 հարց ու պատասխանի երեկոներ, 890 մշտական գործող լեկտորիումներ, դասախոսությունների 145 ցիկլ, 200 հանդիպում արտադրության առաջավորների, գիտնականների, գրողների, արվեստի աշխատողների հետ և այլն։

Ունկնդիրների շրջանում մեծ հետաքրքրություն են առաջ բերում գիտա-արտադրական սեմինարները, թեմատիկ երեկոները և նման այլ միջոցառումներ։

Աշխատավորների շրջանում քաղաքական մասսայական աշխատանքի լավագույն ձևերից մեկը կուլտուրայի ժողովրդական համալսարանն է. ռեսպուբլիկայում այժմ գործում են 70-ից ավելի այդպիսի համալսարաններ, մոտ 15 հազար ունկնդիրներով։ Կուլտուրայի համալսարանները կոչված են մասսաների մեջ տարածելու բազմակողմանի գիտելիքներ, բարձրացնելու նրանց քաղաքական գիտելիքների մակարդակը, ընդլայնելու նրանց կուլտուրական մտահորիզոնը, զարգացնելու նրանց էսթետիկական ճաշակը և այլն։ Սակայն ցավով պետք է նկատել, որ մեզ մոտ կուլտուրայի շատ համալսարանների գործունեությունը միակողմանի է, սահմանափակվում է միայն երաժշտական կուլտուրայի պրոպագանդմամբ, գեղարվեստական ինքնագործունեության համերգներով։ Անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում մարքս-լենինյան ուսմունքի և մեր պարտիայի քաղաքականության հարցերին, գիտության ու տեխնիկայի նվաճումներին, ինչպես նաև արտադրության առաջավորների փորձին։ Դեռևս քիչ են գիտության, տեխնիկայի, առաջավոր փորձի, տնտեսական գիտելիքների համալսարանները։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը պարտիական կազմակերպություններին մատնացույց արեց կուլտուրայի ժողովրդական համալսարանների գործունեության այդ թերությունները։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ կուլտուրա հասկացությունը չի սահմանափակվում միայն երաժշտությամբ։ Այդ հասկացությունը շատ ավելի լայն է և ընդգրկում է բազմաթիվ կողմեր։ Ամենից առաջ պետք է իմանալ, որ կուլտուրայի համալսարանը կոչված է բազմակողմանիորեն դաստիարակելու սովետական մարդուն՝ կոմունիստական հասարակության ակտիվ կառուցողին։

Մասսայական-քաղաքական աշխատանքի նոր ձևերից ուշադրության արժանի են կոմունիստական կենցաղին նպաստող խորհուրդները, որոնք կազմակերպված են Կիրովականում և այլ վայրերում՝ բնակելի խոշոր շենքերին կից։ Կոմունիստական կենցաղի ստեղծման ուղղությամբ կատարվող բազմաթիվ միջոցառումների կողքին այս խորհուրդները հաճախ կազմակերպում են նաև դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ, երեկոներ նվիրված մեր երկրում կոմունիստական շինարարությանը, կոմունիստական բարոյականությանը, գիտական աթեիզմին և այլ հարցերի։

Մարքս-լենինյան գաղափարների, պարտիայի և կառավարության որոշումների պրոպագանդման գործում խոշոր դեր են խաղում մշտական գործող ագիտացիոն կետերը։ Նոր ստեղծված 275 այդպիսի ագիտացիոն կետերում տվյալ թաղի կամ թաղամասի բնակիչների համար սիստեմատիկաբար կազմակերպվում են զրույցներ, զեկուցումներ, ցուցահանդեսներ և այլն։ Անհրաժեշտ է այսուհետև ևս զարգացնել քաղաքական աշխատանքի այդ գործուն ձևը, բազմաձև դարձնել ագիտկետերում անցկացվող միջոցառումները, լայնորեն օգտագործել ինտելիգենցիային, մշտական գործող ագիտկետերը դարձնել բնակչության շրջանում տարվող քաղաքական աշխատանքի իսկական կենտրոններ։

Ռեսպուբլիկայում որոշ ուշադրություն է հատկացվում ցուցադրական ագիտացիային։ Բայց այն դեռևս ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի թույլ օղակներից մեկը պետք է



համարել։ Շատ հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ, ինչպես նաև պարտիական կազմակերպությունների քարտուղարներ լոզունգները, պլակատները և ցուցադրական ագիտացիայի մյուս ձևերը համարում են միայն տոնական օրերին շենքերը զարդարելու միջոցներ։

Մեզ մոտ հաճախ կարելի է տեսնել արդիականությունը կորցրած, խունացած, երբեմն նույնիսկ անմիտ և ուղղագրական սխալներով գրված լոզունգներ ու պլակատներ, որոնք ոչ միայն չեն ներգործում ու աշխատավորներին մղում դեպի քաղաքական ու աշխատանքային ակտիվության, այլ, ընդհակառակը, դառնում են հեգնանքի ու ծաղրի առարկա։ Մի՞թե կարող է դիտողի մեջ լուրջ զգացմունք առաջացնել այն լոզունգը, որն աշնանը կոչ է անում ժամանակին ավարտել գարնանացանի աշխատանքները։

Ցուցադրական ագիտացիան պետք է լինի արդիական, լավ ձևավորված ու կոնկրետ։ Ցուցադրական ագիտացիայի միջոցով անհրաժեշտ է մասսայականացնել արտադրության առաջավորների փորձը, լուսաբանել սոցիալիստական մրցության ընթացքը, աշխատավորների ուշադրությունը բևեռել սոցիալիստական պարտավորությունների կատարման վրա, պրոպագանդել ժողովուրդների բարեկամությունը և սոցիալիստական ինտերնացիոնալիզմը։

Պրոպագանդայի՝ կյանքի հետ ունեցած կապը կբնորոշվի նրանով, թե որքան արդյունավետ կօգտագործվեն ագիտացիոն-պրոպագանդիստական միջոցները, որպեսզի մոբիլիզացվի ողջ աշխատավորությունը գյուղատնտեսության նոր, հզոր վերելքն ապահովելու ուղղությամբ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի ընդունած որոշումները կենսագործելու համար։ Պլենումն իր որոշումներում առաջ է քաշել մեր հասարակության տնտեսական կյանքի հիմնական հարցերից մեկը, որի իրագործումը կարևոր էտապ կհանդիսանա նյութական բարիքների առատություն ստեղծելու և կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշման ու նյութերի պրոպագանդման համար արդեն լայնորեն օգտագործվում են ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները։ Պլենումի մասնակիցները, պարտիական և սովետական ղեկավար աշխատողները ռեսպուբլիկայի աշխատավորների առաջ հանդես են եկել զեկուցումներով՝ նվիրված ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումներին։

Այժմ պարտիական լուսավորության ցանցում ուսումնասիրվում են Հունվարյան պլենումի որոշումները և նյութերը։ Պրոպագանդիստներին օգնելու նպատակով ՀԿՊ Կենտկոմի և Երքաղկոմի քաղլուսատանը կազմակերպվել են պրոպագանդիստների ռեսպուբլիկական հնգօրյա սեմինար, պրոպագանդիստների ու ագիտատորների քաղաքային ու շրջանային խորհրդակցություններ։ Ռեսպուբլիկայի, շրջանների, կոլտնտեսությունների ու սովխոզների առջև դրված խնդիրները պրոպագանդելու նպատակով պարտիական կոմիտեների քաղլուս կաբինետներում կազմակերպվել են լուսանկարչական ցուցահանդեսներ, ցուցադրական նյութերի ստենդներ և այլն։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը նշեց, որ գյուղատնտեսության առաջ դրված խնդիրների հաջող լուծման համար հսկայական նշանակություն ունեն արտադրության առաջավոր փորձի և գիտության նվաճումների ընդհանրացումն ու տարածումը։ Ն. Ս. Խրուշչովը գյուղատնտեսական արտադրության առաջավորներին անվանեց գյուղատնտեսության օրինակելի վար-

ման, բարձր արտադրողականության ուղիները ցույց տվող փարոսներ։ Առաջավոր փորձի տարածումը պետք է դառնա մեր պրոպագանդիստների, ագիտատորների, մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության անհետաձգելի խնդիրներից մեկը։ Այս ուղղությամբ կատարվել է որոշակի աշխատանք։ Սակայն դեռևս շատ բան պետք է արվի։ Չի կարելի սահմանափակվել միայն առաջավորների դիմանկարների և արտադրական ցուցանիշների հրապարակմամբ, մի բան, որը մեզանում հաճախ է արվում։

Անհրաժեշտ է ցույց տալ այն ուղիներն ու մեթոդները, որոնց միջոցով գյուղատնտեսության առաջավորները հասել են բարձր ցուցանիշների, կազմակերպել այդ փորձի ուսումնասիրումը գյուղատնտեսական ձեռնարկությունների ղեկավարների և կոլտնտեսականների համար։ Այդ գործին մեծապես կօգնի գրքույկների ու պլակատների հրատարակումը։ Այժմ Հայպետհրատը նախապատրաստում է այդպիսի սերիայի մի շարք գրքույկների ու պլակատների հրատարակումը, որը պետք է արագացնել։ ՀԿՊ Կենտկոմի և Երքաղկոմի քաղլուսատունը ընդհանրացնում և հատուկ գրքույկներով հրատարակում է պրոպագանդիստների ու ագիտատորների լավագույն փորձը, պրոպագանդիստներ, որոնք հմուտ կերպով կարողանում են պրոպագանդել տնտեսական գիտելիքները և արտադրության առաջավորների փորձը։

Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքներում հատուկ ուշադրություն պետք է նվիրել Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումում Ն. Ս. Խրուշչովի ելույթին, որտեղ խոր կերպով վերլուծված է գյուղատնտեսության վիճակը, ցույց է տրված, որ անհրաժեշտ է արագ կերպով զարգացնել կոլտնտեսային և սովխոզային արտադրության բոլոր ճյուղերը և նշված են գյուղատնտեսական մթերքների արտադրության ընդլայնման ուղիները։

Պրոպագանդիստական աշխատանքի բնագավառում կարևոր տեղ պետք է գրավի նաև ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը՝ «Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության արդյունքների մասին»։ Խորհրդակցության նյութերն ուսումնասիրվել են պարտիական լուսավորության ցանցում, դրանց վերաբերյալ կազմակերպվել են բազմաթիվ դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ։ Այժմ հարկավոր է սիստեմատիկ աշխատանք տանել պլենումի որոշման հիմնական սկզբունքների բացատրման ուղղությամբ։

Այդ որոշումների պրոպագանդումը՝ սերտորեն կապված մեր ռեսպուբլիկայի ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների ու ամբողջ աշխատավորության առջև դրված խնդիրների հետ, հանդիսանում է պարտիական կազմակերպությունների չափազանց կարևոր և պատվաբեր խնդիրը, յուրաքանչյուր կոմունիստի սրբազան պարտքը։

Պարտիական պրոպագանդայի մասսայականությունը, կյանքի հետ նրա անքակտելի կապը մեծապես նպաստում են կոմունիզմ կառուցող մեր երկրի հաղթական երթին։

---

# ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ (1917—1921 ԹԹ.)

Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ

1917 թվականի Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո Հայաստանի բոլշևիկները դուրս եկան ընդհատակից և բազմաթիվ տեղերում ստեղծեցին իրենց նոր բջիջներն ու հենակետերը։ Նրանց ղեկավարությամբ Ալեքսանդրապոլում (Լենինական), Ալավերդում, Ղափանում, Ղարաքիլիսայում (Կիրովական), Էջմիածնում, Նոր Բայազեդում (Կամո), Դիլիջանում և այլ վայրերում կազմակերպվեցին բանվորների, զինվորների, գյուղացիների դեպուտատների Սովետներ, որոնք զգալի դեր խաղացին մասսաների ռևոլյուցիոն վերելքի կազմակերպման գործում։

Բոլշևիկներն աշխատավորությանը բացատրում էին տեղի ունեցած բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի նշանակությունը, դեպի առաջիկա սոցիալիստական ռևոլյուցիան նպատակադրող լենինյան լոզունգների իմաստը և մասսաներին կոչ էին անում համախմբվել լենինյան դրոշի շուրջը։ Բոլշևիկ ագիտատորները, հատկապես աշխատավոր գյուղացիներին բացատրում և համոզում էին, որ բուրժուական ժամանակավոր կառավարությունն ու նրա տեղական օրգանները երբեք էլ կամավոր կերպով չեն վերացնի հողի կալվածատիրական սեփականությունը, չեն լուծի գյուղացիների հողազրկության ու սակավահողության պրոբլեմը, նրանց չեն ազատի կարիքից ու թշվառությունից։ Բոլշևիկները գյուղացիներին ցույց էին տալիս, որ առանց հաղթական սոցիալիստական ռևոլյուցիայի անհնար կլինի լուծել ագրարային հարցը, ազգայնացնել հողը և պայմաններ ստեղծել նրա հանրային մշակման ու օգտագործման համար։ Բոլշևիկների խոսքի ճշմարտացիությունը գիտակցում էր աշխատավորության ճնշող մեծամասնությունը։

Արձագանքելով ամբողջ երկրում ծավալված ագրարային շարժումներին, Անդրկովկասի գյուղացիները, բոլշևիկների ղեկավարությամբ, պայքարի էին ելնում հողի և իրենց քաղաքական ազատության համար։ 1917 թվականի փետրվար-հոկտեմբեր ամիսներին ագրարային-ռևոլյուցիոն շարժումներն ընդգրկեցին նաև Հայաստանը։ Այդ շրջանում պայքարի առաջին շարքերում էին Երևանի նահանգի և Լոռու ռևոլյուցիոն գյուղացիները։

1917 թվականի գարնանը Երևանի նահանգի Նոր Բայազեդի գավառի Արզաքյանդ, Ռնդամալ, Բջնի և այլ գյուղերի գյուղացիները բռնագրավում և բաժանում էին իրար մեջ կալվածատիրական, վանքապատկան և պետական հողերը։ Երևանի գավառի Կայա-Խարաբա ադրբեջանական գյուղի գյուղացի-

ները նույնպես բռնագրավում էին պետական հողերը։ Նույն թվականի ամռանը հակակառավարական և ագրարային շարժումներ են բռնկվում Լոռիում։ Գավառի Հաղպատ, Ծոճկան և այլ գյուղերի գյուղացիները հրաժարվում են կալվածատերերին բահրա վճարելուց և կալվածատիրական հողերը բռնագրավելու մի շարք փորձեր են անում։ Միաժամանակ Նոր Բայազետի գավառում այդ շարժումներն ավելի են ծավալվում ու խորանում։ Արզաքյանդցիները շարունակում են իրենց ձեռքում պահել Շուտուրովների կալվածքները։ Նրանց հետևելով կալվածատիրական ու պետական հողերը բռնագրավում են նաև շրջակա Աղվերան, Ալափարս և այլ գյուղերի գյուղացիները։ Նոր Բայազետի գավառի բոլշևիկյան կազմակերպության նախաձեռնությամբ արզաքյանդցիները մինչև իսկ ընտրել էին ռևոլյուցիոն գործադիր կոմիտե, որը և 1917 թվականի գարնանը և ամռանը ղեկավարում էր գյուղացիների պայքարը։

1917 թվականի օգոստոսի 19-ին Ախտայի կոմիսարիատի նախագահը Երևանի նահանգային կոմիսարիատին ուղղած հեռագրում խոստովանում է, որ իրենք անզոր են ճնշելու շրջանի գյուղացիների ապստամբությունը։ «Արզաքյանդցիները,— ասված է այդ հեռագրում,— ավերում են կալվածները... անտառը... անկարգությունները աճում են, չկա ավազակներին սանձահարելու և կարգը վերականգնելու և ոչ մի միջոց։ Ամբողջ բնակչությունը զինված է և դիմադրություն է ցույց տալիս։ Խնդրում եմ ուղարկել ռազմական ուժեր... այլապես անարխիան կտարածվի ամբողջ գավառում» (ՀՍՍՌ ՊԿԱ, ֆ. 511, ց. 1, գ. 73, թ. 23—29)։ Արզաքյանդի աշխատավոր գյուղացիները, ինչպես և նրանց օրինակին հետևող Ալափարս, Ենղամալ և այլ գյուղերի աշխատավորությունը ո՛չ միայն հրաժարվում են կատարել Ժամանակավոր կառավարության ու նրա տեղական օրգանների կարգադրությունները, այլև բռնագրավում են կալվածատիրական հողերն ու գույքը։ Նույնպիսի վճռականությամբ էին պայքարում նաև Էջմիածնի ու նրա շրջակայքի աշխատավորները։

Անդրկովկասում ու Հայաստանում բանվորական ու գյուղացիական ռևոլյուցիոն շարժումներն ավելի հաճախակի ու կազմակերպված դարձան 1917 թվականի աշնանը։

Այդ ժամանակ ՌՍԴԲ(բ)Պ կազմակերպությունների ղեկավարությամբ Լոռու Հաղպատ, Որնակ, Ղաշաղան, Արդվի, Կուրթան և այլ գյուղերի գյուղացիները գրավում էին կալվածատիրական հողերը և Ալավերդու բանվորների հետ միասին հանդես գալիս տիրող կարգերի դեմ։

Անդրկովկասի ու Հայաստանի բանվորա-գյուղացիական ռևոլյուցիոն շարժումների և բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության նոր վերելքի գործում անգնահատելի դեր խաղաց ՌՍԴԲ (բոլշևիկների) Պ Կովկասյան Երկրային համագումարը (1917 թվականի հոկտեմբերի 2-ից 7-ը)։ Համագումարը ընթացիկ մոմենտի, ազգային և այլ հարցերից բացի քննարկեց նաև ագրարային հարցը և, ընդունելով պարտիայի VI համագումարից բխող համապատասխան որոշումներ, երկրամասի բոլշևիկյան կազմակերպություններին կոնկրետ առաջադրանքներ տվեց մոտեցող սոցիալիստական ռևոլյուցիային նախապատրաստվելու համար։

Համագումարը գտնում էր, որ անհրաժեշտ է գյուղերում ստեղծել գյուղացիական Սովետներ կամ գյուղացիական կոմիտեներ, որոնց անմիջական ղեկավարությամբ անհապաղ պետք է բռնագրավել կալվածատիրական, պետական, վանքապատկան, վակուֆային ու այլ հողեր, չքավոր գյուղացիությունը իր բո-



լոր կապերը պետք է խզի համաձայնողական ու բուրժուա-նացիոնալիստական պարտիաներից և սերտորեն դաշնակցելով պրոլետարիատի հետ, բոլշևիզմի դրոշով գրոհի գնա տիրող կարգերի դեմ։

Այդ համագումարից հետո ամբողջ Կովկասում ու Հայաստանում աշխուժացավ բոլշևիկների գործունեությունը, ստեղծվեցին բոլշևիկյան նոր բջիջներ ու խմբեր։

Առանձնապես ուժեղացան Լոռու գյուղական բոլշևիկյան կազմակերպությունները, որոնց գործունեությանն ուղղություն էին տալիս ՌՍԴԲ(բ)Պ Կովկասյան Երկրային կոմիտեի ներկայացուցիչներ Անաստաս Միկոյանը, Ասատուր Կախոյանը, Սերգո Խանոյանը և ուրիշներ։ Ալավերդու և Հաղպատի ուժեղ կոմբջիջների կողքին սկսեցին երևան գալ և գործել Ուզունլարի, Ծոճկանի, Արճեշի, Շնողի, Որնակի և այլ գյուղերի բոլշևիկյան կազմակերպությունները։ Պատահական չէ, որ այդ շրջանում գյուղացիական ռևոլյուցիոն ելույթները հենց Լոռիում էին ամենից արագ վերելք ապրում։

Ագրարային շարժումները գնալով ծավալվում էին և սասանում գոյություն ունեցող իրավակարգի հիմքերը։ Օրավուր աճում էր բոլշևիկների ազդեցությունը։ Գյուղացիության ռևոլյուցիոն պայքարը լուսաբանվում էր ժամանակի բոլշևիկյան մամուլում, որը կարևոր դեր էր խաղում մասսաների քաղաքական ինքնագիտակցության բարձրացման և նրանց դասակարգային սուր պայքարի ներգրավելու գործում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի լուրը մեծ հրճվանքով ու ջերմությամբ ընդունեց նաև հայ ժողովուրդը։ Լենինի ղեկավարած Ժողկոմսովետի իշխանությունն ամբողջովին ճանաչելու և ընդունելու մասին բազմաթիվ որոշումներ կայացվեցին Անդրկովկասի ու Հայաստանի աշխատավորության բազմամարդ մասսայական ժողովներում։

1917 թվականի նոյեմբերին Ջալալ-օղլու (Ստեփանավան) կայազորի զինվորների և տեղի գյուղացիության միացյալ միտինգը որոշեց պաշտպանել լենինյան Ժողկոմսովետը և մերժել Անդրկովկասյան ու տեղական կոնտրռևոլյուցիոն ամեն մի կառավարություն։ Դեկտեմբերի մեկին Սարիղամիշի գյուղացիական դեպուտատների Սովետը, քննելով ընթացիկ մոմենտի հարցը, որոշեց՝ ողջունել Սովետների համառուսաստանյան II համագումարում ստեղծված լենինյան կառավարությունը, բողոքեց Անդրկովկասյան կոմիսարիատի ստեղծման դեմ և խնդիր դրեց Սովետական կառավարություն ստեղծել երկրամասում։ 1918 թվականի հունվարին Սարիղամիշում ու շրջանի շատ գյուղերում իշխանությունն անցավ բոլշևիկյան Սովետների ձեռքը։

1918 թվականի հունվարի 9-ին Հաղպատի բոլշևիկյան կազմակերպության ընդլայնված ժողովը, որին մասնակցում էին մոտ 200 պարտանդամներ ու համակրողներ, Ս. Իսրայելյանի և Ս. Եվոյանի ղեկավարությամբ միաձայն որոշեց՝ ճանաչել միայն Սովետների իշխանությունը և բոլոր միջոցներով պայքարել Անդրկովկասյան կոմիսարիատի դեմ։ Հաղպատի բոլշևիկներն ու նրանց համակրող գյուղացիներն իրավացիորեն մատնանշում էին, որ դաշնակցական-մենշևիկյան ու մուսավաթական պարտիաներից և այլ նացիոնալիստներից կազմված Անդրկովկասյան կոմիսարիատը Կերենսկու բուրժուական կառավարության նման հակաժողովրդական է և ի վիճակի չէ լուծելու ոչ ագրարային, ոչ ազգային և ոչ էլ շատ այլ հարցեր. դրա համար էլ այն պետք է տապալել և երկրամասում ստեղծել Սովետական իշխանություն։ Նույն թվա-

կանի ձմռանը Անդրկովկասյան կոմիսարիատի դեմ ապստամբում են Ելիզավետպոլի նահանգի ադրբեջանցի, Թիֆլիսի նահանգի վրացի գյուղացիները։ Սարիղամիշի կայազորն ու աշխատավորությունը, խմորումներ են ծավալվում Երևանի, Ելիզավետպոլի և այլ նահանգների հայ գյուղացիության մեջ (տես «Կավկազսկի ռաբոչի», 2-ը փետրվարի և 8-ը մարտի 1918 թ.)։ Գյուղական պարտիական կազմակերպություններին օգնելու նպատակով ՌԿ(բ)Պ Երկրային Կոմիտեն պարտիական փորձված աշխատողներ էր ուղարկում գյուղերը, հրապարակում բրոշյուրներ, թռուցիկներ և կոչեր, կազմակերպում դրանց և պարտիական թարգմանական գրականության առաքումը երկրամասի գյուղական շրջանները, ինչպես և Հայաստանի գյուղերը։ Հայ գյուղացիությանն էին հասցվում Լենինի և նրա զինակիցների հայերեն թարգմանված աշխատությունները և այլն։ Բոլշևիկների անդուլ աշխատանքի շնորհիվ Հայաստանի մի շարք շրջաններում ու գյուղերում, հատկապես Սարիղամիշի շրջակայքում, Լոռի գավառում, Նոր Բայազեդի մի քանի գյուղերում և ռեսպուբլիկայի մի շարք այլ բնակավայրերում մինչև 1918 թվականի գարնանը իշխանությունը փաստորեն գտնվում էր ապստամբ աշխատավորության ձեռքում։

Այսպես, օրինակ, հակառակ դաշնակների արգելքների, Ղազախ-Շամշադինի գավառամասերից հայ և ադրբեջանական շատ գյուղերում ստեղծվել էին գյուղացիական կոմիտեներ, սովետներ, զինված ջոկատներ՝ հողերը բռնագրավելու համար (տես «Կավկազսկի ռաբոչի» № 25, 1918 թ.)։ Նոր Բայազեդի գավառի մի շարք գյուղերի (Գոմաձոր, Ելենովկա) գյուղացիները բոլշևիկների ղեկավարությամբ ապստամբվելով՝ երկար ժամանակ դիմադրեցին պետական իշխանություններին։

Լոռու մի քանի գյուղերի (Հաղպատ, Շնող, Մղարթ, Կուրթան, Ջալալ-օղլի և այլն) գյուղացիները բռնագրավում են Լոռիս-Մելիքովի, Խանաղայանների և ուրիշ կալվածատերերի հողերը, բաշխում իրար մեջ։ Ապրիլին Հաղպատի գյուղացիները բոլշևիկների ղեկավարությամբ գրավում են կալվածատեր Արամյանցի կալվածքը, հայտարարում Սովետական իշխանություն և կարմիր դրոշ են բարձրացնում Արամյանցի տան վրա։

Վրա է հասնում դաշնակների և նրանց օտարերկրյա տերերի արյունոտ ռեժիմի շրջանը։ Դաշնակները նույնպես չլուծեցին և չէին էլ կարող լուծել ագրարային հարցը։ Հայաստանում տիրում էր կատարյալ անիշխանություն, սով ու թշվառություն։

Այդ օրերին էլ գյուղացիական շարժումները գնալով ոչ թե թուլանում, այլ ուժեղանում էին՝ ընդունելով քաղաքական սուր բնույթ։

1918 թվականի ամռանը զինված ընդհարումներ են տեղի ունենում Ապարանի ու Աշտարակի շրջանների գյուղացիների ու դաշնակցական զորքերի միջև։ Աշնանը Նոր Բայազեդի ու Դարալագյազի բազմաթիվ գյուղերի գյուղացիներ ապստամբում ու վռնդում են դաշնակ կառավարիչներին և պատժիչ ջոկատներին, հրաժարվում են մթերքներ, ինչպես նաև զորակոչիկներ տալուց։

Հաճախ բոլշևիկների ազդեցությամբ զինվորները հրաժարվում էին կրակել գյուղացիների վրա, ուստի պատժիչ արշավախմբերը կազմվում էին ռեակցիոն ուժերից և, հատկապես, դաշնակ մաուզերիստներից։ Գյուղացիական շարժումները փոփոխակի հաջողություններով շարունակվել են դաշնակների տիրապետության համարյա ամբողջ ժամանակաշրջանում։ Շնորհիվ



Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների համառ աշխատանքի, այդ շարժումները գնալով դառնում էին ավելի կազմակերպված և հաճախ կրում էին քաղաքական զինված պայքարի բնույթ։

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների աշխատանքն ավելի կազմակերպված բնույթ է ստանում 1919 թվականի աշնանը, երբ ՌԿ(բ)Պ Երկրային Կոմիտեի հանձնարարությամբ Ա. Մռավյանի, Ս. Կասյանի, Ստ. Ալավերդյանի և ուրիշների գլխավորությամբ անց է կացվում Համահայաստանյան պարտիական խորհրդակցություն և ընտրվում է ՌԿ(բ)Պ Հայաստանի Կոմիտե (Արմենկոմ)։

Իրենց ակտիվ գործունեությամբ աչքի էին ընկնում հատկապես Լոռու, Դիլիջանի և Դարալագյազի գյուղերում գյուղացիական հողային կոմիտեները, Երևանի նահանգի «Արագածոտն գյուղացիական միությունը», «Ալեքսանդրապոլի «Շիրակ գյուղացիական միությունը» և այլն։ «Արագածոտն» անպարտիական գյուղացիական միությունը ստեղծվել էր Երևանի բոլշևիկների նախաձեռնությամբ, Արտաշես Մելքոնյանի անմիջական ղեկավարությամբ և լուրջ աշխատանք էր տանում Արարատյան դաշտավայրի և Արագածի լանջերի գյուղերի աշխատավորության մեջ, ուներ իր ներկայացուցիչը դաշնակցական պառլամենտում և մերկացնում էր վերջինիս հակաժողովրդական վարքագիծը։ Միության միջոցով բոլշևիկները ոչ միայն իրենց կողմն էին գրավում միության անդամ գյուղացիներին, այլև նահանգի մյուս գյուղացիներին։

Ավելի մեծ էր բոլշևիկների ազդեցությունը «Շիրակ գյուղացիական միության» վրա, որի ղեկավարությունը և թերթը համարյա ամբողջովին անցան բոլշևիկների ձեռքը։ «Միության» ղեկավար գործիչներից էին Ալեքսանդր Գրիգորյանը, Նահապետ Կուրղինյանը և ուրիշներ։ «Շիրակ գյուղացիական միության» թերթը հաճախ բացահայտ կոմունիստական պրոպագանդա էր մղում գավառի աշխատավորության մեջ և այդպիսով նպաստում բոլշևիկների ազդեցության տարածմանը գյուղացիության շրջանում։

Գյուղացիների դասակարգային գիտակցությունը բարձրացնելու, նրանց բոլշևիկների պարտիայի շուրջը համախմբելու տեսակետից անգնահատելի դեր խաղացին չքավոր ու միջակ գյուղացիներից կազմված հողային կոմիտեները։ Լոռում, մասնավորապես Ուզունլարում, ուր հին բոլշևիկ Վերգո Թումանյանի գլխավորությամբ գործում էր ՌԿ(բ)Պ ընդհատակյա շրջանային կոմիտե, 1919 թվականի դեկտեմբերին տեղի ունեցավ գյուղացիական դեպուտատների համագումարը։ Ուզունլարի համագումարը իր ընտրած գործադիր կոմիտեին առաջադրանք տվեց հաշվի առնել Լոռու չեզոք գոտու բոլոր հողերը, այդ թվում և կալվածատիրականը և միջոցառումներ նշել չքավոր ու միջակ գյուղացիներին հողով բավարարելու համար։ Գործադիր կոմիտեի մեջ էին մտնում կոմունիստներ Գերասիմ Մելիք-Գրիգորյանը, Լիսինը և ուրիշներ։ Գործադիր կոմիտեին առաջարկվում է գյուղացիներին հայտնել, որ Սովետական Ռուսաստանում վերացված է հողի կալվածատիրական սեփականությունը, հողն այնտեղ պատկանում է աշխատավոր գյուղացուն, իսկ տեղում հողային հարցերը լուծելու համար պետք է ստեղծել հողային կոմիտեներ։

Ամենուրեք տարածվող բոլշևիկյան ագիտացիան ու նախապատրաստական աշխատանքները գյուղացիներին ոտքի էին հանում հողի կալվածատիրական սեփականության և տիրող կարգերի դեմ։

1918—1919 թթ. Հայաստանի գյուղացիական ելույթներից ուշագրավ են

Դիլիջանի և Ղարաքիլիսայի մի շարք գյուղերի զինված ելույթները։ 1918 թվականի աշնանը բոլշևիկների նախաձեռնությամբ Դիլիջանի շրջանի Թոխլուջա գյուղի գյուղացիները հրաժարվում են կատարել գավառային կոմիսարի պահանջները։ Դաշնակների գավառային կոմիսարի հրահանգով գեներալ Բաղդասարովը զինվորական մի ջոկատով մեկնում է այդ գյուղը, որպեսզի գյուղացիներին ստիպի կատարելու տեղական իշխանության կարգադրությունները։ Սակայն գյուղացիներն ապստամբում են, տեղի է ունենում արյունալի ընդհարում։ Գեներալի հրամանով զինվորները նույնիսկ թնդանոթներից են կրակում գյուղացիների վրա և ստիպում նրանց հնազանդվել։ Այնուհետև գյուղը ենթարկվում է էկզեկուցիայի, իսկ շարժման կազմակերպիչները ձերբակալվում և ենթարկվում են զանազան պատիժների (տես ՀՍՍՌ ՊԿԱ, ֆ. 508, գ. 603, թ. 106)։ Գավառի բոլշևիկները դաշնակների այդ չարագործությունների դեմ մյուս գյուղերում կազմակերպում են բողոքի ցույցեր։

1919 թվականին Ղարաքիլիսայի Արփա, Աղավնաձոր, Երթիչ, Մարտիրոս և այլ գյուղերի գյուղացիները բռնագրավում են բեկական հողերի մի մասը, հրաժարվում հարկեր վճարելուց, պետական պարտադիր պարհակներից, թաքցնում են դաշնակցական բանակի դասալիքներին, զորակոչիկներ չեն տալիս և այլն։ Գարնանը Արփայի, Երթիչի և Աղավնաձորի գյուղացիները բռնագրավում են Ջանփոլադովների, Թառումովների և ուրիշների հողերը։

Ղարաքիլիսայի գավառային իշխանությունը պատժիչ ջոկատներ է ուղարկում հիշյալ գյուղերը, բայց չի կարողանում ուժով ազդել գյուղացիների վրա, որոնք զինված դիմադրություն են ցույց տալիս դաշնակներին։ 1919 թվականի աշնանը Ղարաքիլիսայի շատ գյուղեր, գավառի Մարտիրոս գյուղի օրինակով, հրաժարվում են զինվորներ տալ դաշնակների բանակին։ Դաշնակների բանակի դասալիքների թիվը գնալով մեծանում է։

Ագրարային շարժումները տարածվում էին նաև Զանգեզուրում, որտեղ գյուղացիները դուրս էին գալիս ո՛չ միայն դաշնակների, այլև նրանց արևմտյան տերերի, մասնավորապես անգլիական ինտերվենտների դեմ։ Գորիսի աշխատավորները 1919 թվականի գարնանը բոլշևիկների ղեկավարությամբ քաղաքից դուրս են քշում անգլիացի գեներալ Շատելվորտին ու նրա զինվորներին։ Գյուղացիների պայքարը ավելի մասսայական է դառնում 1920 թվականին։

1920 թ. գարնանը Հայաստանի բանվորների ու գյուղացիների ռևոլյուցիոն պայքարը հասավ իր զարգացման բարձր աստիճանին։ Դեռևս Մայիսյան փառապանծ ապստամբությունից առաջ տեղի էին ունենում Լոռու գյուղացիների զինված ելույթներ, որոնք նշանավոր իրադարձություն էին գավառի և ամբողջ Հայաստանի ագրարային շարժումների պատմության մեջ և օգտակար դաս էին ռեսպուբլիկայի աշխատավոր գյուղացիության հետագա ռևոլյուցիոն պայքարի զարգացման համար։ Լոռու բոլշևիկների նախաձեռնությամբ դեռևս 1920 թվականի մարտին տեղի է ունենում «չեզոք գոտու» գյուղացիների հողային կոմիտեների համագումարը, որն ընդունում է հողային դեկրետի նախագիծ, ըստ որի վերացվելու էր հողի կալվածատիրական սեփականությունը և հողը հանձնվելու էր չքավոր ու սակավահող գյուղացիությանը։ Մի քանի օր հետո ՌԿ(բ)Պ Ուզունլարի շրջկոմը որոշում է կազմակերպել գյուղացիական զինված ջոկատներ՝ կալվածատերերի հողերը բռնագրավելու համար։ Կարճ ժամանակում բոլշևիկ Մովսես Զուրաբյանի ղեկավարությամբ կազմակերպվում են



հիշյալ ջոկատները։ Շրջկոմի և հողային կոմիտեների կենտրոնական օրգանի որոշումը կենսագործվում է։ Մ. Զուրաբյանի զինված ջոկատի մեջ ընդգրկված էին տարբեր գյուղերի մոտ 500 հայ, ռուս և այլ ազգի գյուղացիներ։ Այդ ուժերով բռնագրավվում և գյուղացիների օգտագործմանն են հանձնվում (ըստ շնչի) Մղարթի, Այգեհատի, Ուզունլարի, Ղաշղաղանի, Արդվիի և այլ գյուղերի կալվածատիրական հողերը (վարելահողերը, արոտավայրերը, յայլաները և այլն)։

«Չեզոք գոտու» դաշնակցական ու մենշևիկյան տեղական իշխանությունները երկար ժամանակ չէին կարողանում հնազանդեցնել ապստամբ գյուղացիներին։ Միայն ապրիլի երկրորդ կեսին է նրանց հաջողվում ճնշել ապստամբ գյուղերի մեծ մասին և հողը վերադարձնել կալվածատերերին։

Ագրարային շարժումները ծավալվում էին նաև Էջմիածնի, Նոր Բայազետի և այլ գավառներում, ուր գյուղացիները ստիպված էին չնչին գներով, նույնիսկ մի քանի ֆունտ հացով, վաճառել իրենց հողաբաժինները։

Հայաստանի գյուղացիության ռևոլյուցիոն ելույթները սերտորեն շաղկապված էին բանվորական աճող գործադուլային շարժումների ու քաղաքական ելույթների, ինչպես նաև զինվորների մեջ տեղի ունեցող ռևոլյուցիոն խմորումների հետ։ 1920 թվականի գարնանն արդեն պարզ երևում էր, որ Հայաստանում հասունանում է ռևոլյուցիոն սիտուացիան։ Օտարերկրյա ինտերվենտների դեմ Կարմիր Բանակի տարած փայլուն հաղթանակները Ռուսաստանում, սովետական կարգերի հաստատումը Ադրբեջանում, երկրամասում վեր բարձրացող ռևոլյուցիոն շարժումների ալիքը և բոլշևիկների պարտիայի հեղինակության անշեղ վերելքն ավելի ու ավելի էին ոգեշնչում Հայաստանի բանվորա-գյուղացիական մասսաներին ու նրանց վճռական պայքարի հանում ընդդեմ դաշնակների արյունոտ ռեժիմի։

1920 թվականի Մայիսյան ապստամբությունը նոր էտապ հանդիսացավ Հայաստանի չքավոր ու միջակ գյուղացիության ռևոլյուցիոն պայքարում, քանի որ այստեղ հողի համար գյուղացիների պայքարը վերաճեց իշխանությունը շահագործող դասակարգերի ձեռքից խլելու և պրոլետարիատի դիկտատուրայի, Սովետական իշխանության հաստատման համար մղվող տևական ու համառ պայքարի։

1920 թվականի Մայիսյան ապստամբությունը, որին հերոսաբար մասնակցեց նաև Հայաստանի աշխատավոր գյուղացիությունը, ցույց տվեց, որ մեր գյուղացիությունն արդեն պատրաստ է պրոլետարիատի հետ դաշնակցած տապալել գոյություն ունեցող ռեժիմը և հաստատել սովետական կարգեր։

Մայիսյան ապստամբության պարտությունից հետո սկսված դաժան ռեպրեսիաները, սպիտակ տեռորը, ապստամբության մասնակից հարյուրավոր պարտիական ու հազարավոր անպարտիական բոլշևիկների, բանվորների ու գյուղացիների գնդակահարությունները, գազազած դաշնակների բոլոր հալածանքներն անզոր էին կասեցնելու Հայաստանի բանվորների ու գյուղացիների ռևոլյուցիոն պայքարը։ Այդ պայքարը շարունակվեց. նույն թվականի ամռանն ու աշնանը նորից ծավալվեցին ռևոլյուցիոն շարժումները, որոնց մեջ իր արժանի տեղն ունի նաև Հայաստանի աշխատավոր գյուղացիությունը։

Մինչև 1920 թվականի հունիսի վերջերը Շամշադինի և Իջևանի ապստամբները շարունակում էին զինված դիմադրությունը. դաշնակներին չէր հաջողվում ճնշել ապստամբությունն այդ շրջաններում։ Ապստամբները միայն իրենց

ղեկավարության որոշմամբ, կազմակերպված ձևով ետ քաշվեցին դեպի Սովետական Ադրբեջան, իսկ նրանց մի մասը մնաց և ամրացավ անառիկ լեռներում: Կարելի է ասել, որ մինչև սովետական կարգերի հաստատումը, չընդհատվեց այդ շրջանների գյուղացիության հերոսական պայքարը: Չընդհատվեց նաև Շամշադինի, Իջևանի մարտնչող գյուղացիների անմիջական կապը 11-րդ բանակի շտաբի, Ադրբեջանի Կոմպարտիայի Կենտկոմի ու կառավարության հետ:

Դաշնակների դեմ համառ պայքար էին մղում նաև Զանգեզուրի աշխատավորները, որոնք 1920 թվականի հուլիսի սկզբներին 11-րդ Կարմիր Բանակի առաջավոր ջոկատների օգնությամբ տապալեցին դաշնակների լուծը: Մինչև 1920 թվականի նոյեմբերի երկրորդ կեսը իշխանությունը Զանգեզուրում համարյա անընդմեջ գտնվում էր ժողովրդի ձեռքում: Զանգեզուրի գյուղացիներն ու Ղափանի կոնսերվացված պղնձարդյունաբերական-լեռնահանքային ձեռնարկությունների նախկին բանվորները հաճախ արյունալի կռիվներ էին մղում Նժդեհի և այլ դաշնակցական բանդաների դեմ: Միայն, երբ Սովետական Ադրբեջանի որոշ շրջաններում բռնկվեցին մուսավաթական խռովություններ և Կարմիր Բանակի զորամասերը ետ քաշվեցին Զանգեզուրից, դաշնակցականներին հաջողվեց ժամանակավորապես պարտության մատնել Զանգեզուրի ռևոլյուցիոն ջոկատներին և վերահաստատել իրենց հակաժողովրդական տիրապետությունը:

Շարժումը ծավալվում էր նաև Ալեքսանդրապոլի, Ապարանի, Աղբաբայի և այլ շրջաններում: 1920 թվականի նոյեմբերի սկզբներին Ալեքսանդրապոլի շրջակայքի մի քանի գյուղերի գյուղացիները, դուրս քշելով դաշնակներին, հռչակեցին Սովետական իշխանություն: Նույն ամսում զինված ելույթներ ունեցան Ալիքուչակի և նրա հարևան մի քանի գյուղերի գյուղացիները: Զինված նոր ընդհարումներ տեղի ունեցան դաշնակ զինվորների և Աշտարակի շրջանի շատ գյուղերի աշխատավոր գյուղացիների միջև: Նոր Բայազեդի գավառի բազմաթիվ գյուղերից ապստամբ գյուղացիները դուրս քշեցին դաշնակ կառավարիչներին: Հայ, ռուս, հույն գյուղացիների հետ միասին զենքը ձեռքներին պայքարի էին դուրս եկել նաև Աղբաբայի և այլ շրջանների ադրբեջանական գյուղերի գյուղացիները:

1920 թվականի նոյեմբերի 29-ին, բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, ապստամբ հայ աշխատավորությունը ռուս մեծ ժողովրդի, 11-րդ Կարմիր Բանակի օգնությամբ տապալեց դաշնակների ռեժիմը և հաստատեց սովետական կարգեր:

Սովետական կարգերի հաստատումով հայ ժողովուրդը մտավ սովետական ժողովուրդների մեծ ու անպարտելի ընտանիքը, ստացավ ազգային վերածննդի հնարավորություն և պատմական կարճ ժամանակամիջոցում կերտեց իր երջանիկ ներկան: Հայ գյուղացիությունը այդ բոլոր պատմական իրադարձությունների ակտիվ մասնակիցներից է:

---

# ԻՋԵՑՆԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԸ


## Ա. ՋՈՒՐԱԲՅԱՆ


Կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի իջեցումը ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունի: Սկսած կոլտնտեսային մասսայական շարժման առաջին տարիներից, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման և արտադրության ծախքերի կրճատման հարցերը միշտ էլ պարտիայի ուշադրության կենտրոնում են եղել: Սակայն այդ հարցերն ամբողջությամբ դրվել են ՍՄԿՊ XX և XXI համագումարների և նրանց հաջորդող պարտիայի Կենտկոմի պլենումների որոշումներում: «Չի կարելի այսուհետև տնտեսությունը վարել,— մատնանշում է Ն. Ս. Խրուշչովը,— առանց արտադրվող արտադրանքի ինքնարժեքի խոր և համակողմանի վերլուծման, առանց ռուբլու վերահսկողության»:

Այժմ գյուղատնտեսության մեջ առաջին պլանի վրա են դրված աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցերը: Արտադրանքի ինքնարժեքը կոլտնտեսության արտադրական գործունեության կարևորագույն ցուցանիշներից մեկն է, որը հնարավորություն է տալիս որոշելու, թե որքան միջոցներ է ծախսում տվյալ տնտեսությունը մեկ միավոր արտադրանքի վրա: Դրա հիման վրա կարելի է բացահայտել տնտեսության ներքին ռեզերվները, խնայողաբար ու խելացիորեն կազմակերպել կոլտնտեսային արտադրությունը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը:

Մեր կողմից ուսումնասիրված կոլտնտեսությունների հիմնական մթերքների արտադրության վրա կատարված ծախսումների վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ մթերքների ինքնարժեքի մակարդակի միջև զգալի տարբերություններ կան ըստ տարբեր կուլտուրաների և տարբեր տարիների (տե՛ս հաջորդ էջում զետեղված աղյուսակի տվյալները):

Կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքը 1959 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, արտադրանքի հիմնական տեսակների գծով զգալիորեն իջել է, հատկապես կաթինը: Ռեսպուբլիկայում կաթի ամեն մի ցենտների ինքնարժեքը 22,3 ռուբլուց իջել է 15,0 ռուբլու (նոր դրամով):

Գոյություն ունի գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցման երկու աղբյուր. 1) գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացումը և 2) մեկ հեկտար հողի մշակման կամ մեկ գլուխ անասունի խնամքի վրա կատարվող ծախսերի կրճ-

ճատումը։ Կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի իջեցման վճռական պայմանը, ամենից առաջ, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումն է։ Այն կոլտնտեսություններում, որտեղ ռացիոնալ է կազմակերպված արտադրությունը, կիրառվում է աշխատանքի և միջոցների խստագույն խնայողություն, բարձր է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը, հետևապես՝ ցածր է այդ մթերքների ինքնարժեքը և հակառակը։

**Մեկ ցենտներ արտադրանքի ինքնարժեքը 1956 և 1959 թթ. (ռուբլիներով), աշխատանքային վարձատրությունը՝ սովխոզային տարիֆային դրույքներով (մեկ աշխօրը 1,6 ռ.) գնահատելիս**

| Կոլտնտեսություններում | Մթերքների անվանումը | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Բամբակ | | Խաղող | | Կովի կաթ | |
| | 1956 | 1959 | 1956 | 1959 | 1956 | 1959 |
| Արտաշատի շրջանի կոլտնտեսություններում (միջինը) | 32,4 | 22,5 | 7,7 | 7.4 | 22,2 | 15,8 |
| Այդ թվում՝ | | | | | | |
| ա) Վ. Արտաշատ | 28.5 | 17.9 | 11,7 | 7,7 | 24.8 | 10.2 |
| բ) Այգեզարդ | 32,8 | 23.4 | 4.6 | 4.8 | 20.1 | 11,6 |
| գ) Նորաշեն | 34,9 | 18.4 | 6,2 | 6,4 | 26,5 | 13.6 |
| դ) Մխչյան | 29.4 | 19,0 | 7.4 | 8,4 | 11.6 | 15,0 |
| ե) Ոստան | 38,5 | 20,1 | 10.8 | 10.4 | 12.3 | 13,5 |
| Շահումյանի շրջանից | | | | | | |
| ա) Ստալինի անվան կոլտնտ. | — | — | — | 4,9 | — | 6,8 |
| բ) Շահումյանի անվան կոլտնտ. | — | | 10,2 | 6,5 | 10.7 | 9,6 |
| Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում (միջինը) | 29,8 | 23,1 | 10,6 | 9,6 | 22,3 | 15,0 |

Շատ կոլտնտեսություններում զգալի տարբերություններ կան աշխատանքի արտադրողականության և ինքնարժեքի մակարդակի միջև։ Եթե այդ տարբերությունները էական չեն բամբակի, բանջարեղենի և խաղողի արտադրության բնագավառում, ապա անասնաբուծական մթերքների արտադրության բնագավառում դրանք խիստ էական են։ Այդ մակարդակը տատանվում է 1:3, իսկ առանձին մթերքների գծով՝ 1:4-ի սահմաններում։ Այս հանգամանքը բացատրվում է նրանով, որ այդ տնտեսություններում արտադրանքի միևնույն միավորի վրա անհրաժեշտ չափից 3—4 անգամ ավելի շատ աշխատանք է ծախսվել։ Թեև ուսումնասիրվող կոլտնտեսությունները գտնվում են գրեթե միևնույն հողակլիմայական ու տնտեսական պայմաններում, սակայն անասնաբուծական մթերքների ինքնարժեքի մակարդակի միջև կան զգալի տարբերություններ, որի հիմնական պատճառը արտադրության կազմակերպման գործում եղած լուրջ թերություններն են։

Անասնաբուծական մթերքների ինքնարժեքի և այդ մթերքների պետական գնման գների համադրումը ցույց է տալիս, որ ուսումնասիրվող կոլտնտեսություններում շատ մթերքների գծով ինքնարժեքը բարձր է նրա պետական գնման գնից և դա է պատճառը, որ այդ մթերքների իրացումից առաջացած դրամական եկամուտները չեն փոխհատուցում արտադրական ծախսերը։ Մինչդեռ ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կան ինքնարժեքի իջեցման



և հանրային անասնաբուծության եկամտաբերությունը բարձրացնելու հսկայական ռեզերվներ։

Ծախսումներն ըստ տարրերի վերլուծելիս ակնհայտ է դառնում, որ այդ մթերքների արտադրության վրա կատարված ընդհանուր ծախսերի մեջ աշխատանքի վարձատրությանն ընկնում է 50—60 և ավելի տոկոսը։ Գլխավոր տարրերը, որոնցից գոյանում է ինքնարժեքի մեծ մասը, դա աշխատանքի և սեփական արտադրության նյութերի (սերմերը՝ բուսաբուծության, կերը՝ անասնաբուծության մեջ) վրա արած ծախսումներն են։ Սակայն սերմերի և կերի բարձր ինքնարժեքը նույնպես աշխատանքի մեծ ծախսումների հետևանք է։ Ուստի, կոլտնտեսականների ջանքերը պետք է կենտրոնացնել աշխատանքային ծախսումների խիստ իջեցման վրա։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման գլխավոր պայմանը կոլտնտեսություններում գյուղատնտեսական աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումն է, մարդկային աշխատանքի տնտեսումը։ Այսպես. բամբակի բերքահավաքը 2—3 անգամ ավելի ձեռքի աշխատանք է պահանջում, քան նրա մշակությունը, բայց որովհետև ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մինչև այժմ հիմնականում չի մեքենայացվել բամբակի բերքահավաքը, բարձր են աշխատանքային ծախսումները, հետևապես և՝ բամբակի ինքնարժեքը։

Առաջավոր բամբակագործների փորձը ցույց է տալիս, որ կոմպլեքսային մեքենայացման պայմաններում բամբակի արտադրության վրա կատարվող աշխատանքային ծախսումները և նրա ինքնարժեքը կարելի է իջեցնել 2—3 անգամ։

Միջին Ասիայի մեքենա-փորձնական կայանի անվանի մեխանիկ Վալենտինա Տյուպկոն 25 հեկտար բամբակի ցանքը մշակեց քառակուսի-բնային եղանակով և օգտագործելով գոյություն ունեցող մեքենաների կոմպլեքսը, յուրաքանչյուր հեկտարից ստացավ 28,3 ցենտներ բերք. մեկ ցենտներ բամբակի արտադրության վրա կատարվող աշխատանքային ծախսումները հասցրեց 0,9 մարդ-օրվա, իսկ ինքնարժեքը՝ 7,6 ռուբլու։

Հետևելով Տյուպկոյի օրինակին՝ մեր ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ 1958—1959 թվականներին որոշ տարածության վրա նույնպես քառակուսի-բնային եղանակով ցանք կատարեցին։ Լավ արդյունքի հասավ Վեդու շրջանի Ղարալար գյուղի կոլտնտեսությունը, որը 1959 թվականին 72 հեկտարի վրա կատարեց բամբակի քառակուսի-բնային ցանք 50×50 սխեմայով. քառակուսի-բնային ցանքը հնարավորություն է տվել պլանտացիայում կատարել մեքենայական երկկողմանի մշակություն։ Այդ դաշտերում կատարվել է ձեռքով նոսրացում և քաղհանվել են բների շուրջը եղած մոլախոտերը, իսկ մյուս դաշտամասը, որը 88 հեկտար է, ցանվել և մշակվել է սովորական եղանակով։ Քառակուսի-բնային եղանակով ցանված և մշակված յուրաքանչյուր հեկտարի վրա ծախսվել է 12 մարդ-օր ձեռքի աշխատանք, իսկ սովորական մշակության դեպքում՝ 28 մարդ-օր։ Քառակուսի-բնային եղանակով մշակված դաշտի միջին բերքատվությունը կազմել է 26,7 ցենտներ, իսկ սովորական եղանակով մշակված դաշտինը՝ 15,4 ցենտներ։ Հասկանալի է, թե որքան ցածր կլիներ բամբակի ինքնարժեքը, եթե կոլտնտեսությունը մեքենայացներ նաև այդ կուլտուրայի բերքահավաքը։

Խաղողի և բանջարեղենի ինքնարժեքի բարձր լինելու պատճառը նույնպես դաշտային աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման պակասն է։ Աշ-

խատանքային ծախսումները կարելի է իջեցնել՝ բամբակի, բանջարեղենի քա-
ռակուսի-բնային ցանքի և խաղողի վազերը շպալերների վրա բարձրացնելու
միջոցով։ Այդ ամենը հնարավորություն կտան աշխատատար պրոցեսները
մեքենայացնելու և աշխատանքային ծախսումները զգալի չափով կրճատելու։
Գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի բարձր մակարդակը ար-
դյունք է նաև ոչ ճիշտ նորմավորման և ավելորդ, չարդարացված աշխատան-
քային ծախսումների։ Ներկայումս ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում
աշխատանքի նորմավորման պրակտիկան ունի շատ թերություններ, որոնք
արտահայտվում են ինչպես արտադրական նորմաների, այնպես էլ ըստ աշխ-
օրերի դրանց գնահատման մեջ։ Այդ մասին են վկայում հետևյալ տվյալները։
Արտաշատի շրջանի Մխչյանի կոլտնտեսությունում այգեփորի օրական ար-
տադրական նորման տատանվում է 250—450, Էջմիածնի շրջանի Մուղան
գյուղի կոլտնտեսությունում՝ 330—650, իսկ Հոկտեմբերյանի շրջանի Նալ-
բանդյան գյուղի կոլտնտեսությունում՝ 200—300 քառ. մետրի սահմաննե-
րում։ Բամբակի հավաքման գծով արտադրական նորման տատանվում է
60—90 կգ. սահմաններում։

Բերված տվյալներից երևում է, որ սահմանված արտադրական նորմա-
ների և դրանք՝ ըստ աշխօրերի գնահատելու միջև կան էական տարբերու-
թյուններ։ Չնայած այդ կոլտնտեսությունները գտնվում են գրեթե միևնույն
հողակլիմայական, տնտեսական պայմաններում, սակայն արտադրական նոր-
մաները նույնիսկ միևնույն տնտեսությունում տարբերվում են 1,5—2, իսկ
առանձին շրջանների կոլտնտեսություններում՝ 1,5—2,3, երբեմն էլ ավելի
անգամ։

Կոլտնտեսականի կատարած աշխատանքի ճիշտ գնահատումը շատ բա-
նով կախված է աշխատանքներն ըստ խմբերի բաժանելու ճշտությունից։ Սա-
կայն այս հարցում ևս կան զգալի տարբերություններ։ Այսպես, բամբակի
բերքահավաքի արտադրական օրական նորման (60—90 կգ) բոլոր կոլտնտե-
սություններում գնահատվում է 1,75 աշխօր, այսինքն գնահատվում է 6-րդ
խմբով, մինչդեռ այգեփորը՝ 1,5 (5-րդ խմբով), իսկ առանձին կոլտնտեսու-
թյուններում՝ նույնիսկ 1,25 աշխօր (4-րդ խմբով)։ Այգեփորի և նման այլ
աշխատանքների ոչ ճիշտ գնահատելը հանգեցնում է անորակ աշխատանքի,
որը բացասաբար է անդրադառնում գյուղատնտեսական կուլտուրաների բեր-
քատվության վրա։

Միևնույն աշխատանքների համար արտադրական նորմաների և դրանք՝
ըստ աշխօրերի գնահատումների միջև եղած այդպիսի խոշոր տարբերություն-
ները սխալ նորմավորման հետևանք են, որոնք իրենց արտահայտությունն
են գտնում նաև արտադրանքի ինքնարժեքի մեջ։ Հասունացել է կոլտնտեսու-
թյուններում տեխնիկական նորմավորումը կիրառելու խնդիրը, որը հնարա-
վորություն կտա արտադրության պրոցեսում անընդհատ հսկելու, ուսումնա-
սիրելու նորմաները։ Սա շատ կարևոր գործոն է արտադրության ռացիոնալ
կազմակերպման և աշխատանքի արտադրողականության բարձրացման աս-
պարեզում։ Տեխնիկական նորմավորման հարցը և նրա կազմակերպումն առաջ
են քաշում իրենք՝ կոլտնտեսությունները։ Անհրաժեշտ է ձեռնամուխ լինել
այդ գործին և արագորեն լուծել այն։

Վարչա-սպասարկող անձնակազմի պահպանման համար աշխօրերի մեծ
ծախսումներ առաջանում են մանր ֆերմաների ու բրիգադաների, նրանց վա-



րիչների, օգնականների և արտադրությանն սպասարկող այլ աշխատողների
ուռճացած ապարատի հետևանքով։ Այդ երևույթը, հատկապես, նկատելի է
Արարատյան հարթավայրի կոլտնտեսություններում։ Շատ հաճախ արտա-
դրությանն սպասարկող անձանց 1,5—2 անգամ ավելի աշխօր է գրանցվում,
քան արտադրության մեջ անմիջականորեն աշխատողներին։ Այսպես, 1959
թվականին Աշտարակի շրջանի Ոսկեվազի կոլտնտեսության նախագահին
գրանցվել է 1900, իսկ հաշվապահին և ագրոնոմին՝ 1500-ական աշխօր։
Նույն շրջանի Աշտարակ և Օշական գյուղերի կոլտնտեսությունների բրիգա-
դավարներին տարեկան գրանցվել է 1200—1400-ական աշխօր, իսկ արտա-
դրության մեջ անմիջականորեն աշխատող աշխատունակ կոլտնտեսականի
աշխատանքի միջին վարձատրությունը կազմել է 200—300 աշխօր։ Նման
փաստեր կան նաև մյուս կոլտնտեսություններում։

Հայտնի է, որ կոլտնտեսականին գրանցված յուրաքանչյուր աշխօր ներ-
առվում է ինքնարժեքի մեջ։ Եթե այդ աշխօրը գրանցվում է կատարված աշ-
խատանքի փոքր մասի, կամ բոլորովին չաշխատելու համար, դրանով բարձ-
րացվում է արտադրանքի ինքնարժեքը, խեղաթյուրվում նրա տնտեսական բո-
վանդակությունը։

Անասնաբուծական մթերքների ինքնարժեքի տարրերի վերլուծությունը
ցույց է տալիս, որ նրանց ինքնարժեքի մեջ ևս մեծ տեսակարար կշիռ են
կազմում աշխատանքային ծախսումները (50—60 տոկոս) և կերի արժեքը՝
30 և ավելի տոկոս, ընդ որում գնովի կերի արժեքը մեծ տեսակարար կշիռ է
կազմում (առանձին կոլտնտեսություններում—Նորաշենի, Վ. Արտաշատի մին-
չև 50—60 տոկոսը)։ Դեռևս բարձր է սեփական կերի ինքնարժեքը, որը բա-
ցատրվում է կերհայթայթման պրոցեսների մեքենայացման չափազանց ցածր
մակարդակով։ Կերհայթայթման մեքենայացումը զգալի չափով կիջեցնի կերի
ինքնարժեքը, իսկ վերջինս՝ անասնաբուծական մթերքների ինքնարժեքը։
Կնշանակի անասնաբուծական ֆերմաներում և կերհայթայթման աշխատանք-
ներում անհրաժեշտ է լայն չափերով արմատավորել գյուղատնտեսական այն
մեքենաներն ու գործիքները, որոնք կրճատում են աշխատանքային ծախ-
սումները և նպաստում անասնաբուծության մթերատվության բարձրացմանը։
Այսպես, անհրաժեշտ է մեքենայացնել կերի մանրացման, տեղափոխման,
կովերի կթի, գոմաղբը հեռացնելու և այլ աշխատատար պրոցեսները, որոնք
համարյա ձեռքով են կատարվում։

Գյուղատնտեսության էլեկտրիֆիկացիայի համամիութենական գիտա-հե-
տազոտական ինստիտուտի տվյալներով ֆերմայում, որտեղ հիմնական աշ-
խատանքները մեքենայացված չեն, բեռնումը, փոխադրումը, կերի պատրաս-
տումն ու անասուններին մատուցելը աշխատանքի ընդհանուր ծախսումների
մեջ կազմում են 25, կովերի կիթը՝ 20—25, ջրամատակարարումը և անա-
սուններին ջրելը՝ 30—40, անասունների պահպանման այլ աշխատանքները՝
4—10 տոկոս։ Կաթնաապրանքային ֆերմայում առավել աշխատատար պրո-
ցեսը ջրամատակարարումը և անասուններին ջրելն է։ Բացի այդ, առանց ջրի
անհնար է մեքենայացնել կերի պատրաստումը, կիթը և այլն։

Աշխատատար պրոցեսների մեքենայացման, լավ կերակրման ու խնամ-
քի, անասունների ցեղային կազմի բարելավման և աշխատանքների ճիշտ
կազմակերպման շնորհիվ Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտե-
սությունում զգալի չափով բարձրացել է անասունների մթերատվությունը,

իջել անասնաբուծական մթերքների ինքնարժեքը։ Այսպես, կովերի կաթնատվությունը 1953 թ. 1880 լիտրի դիմաց 1959 թ. հասել է 4402-ի, կամ ավելացել է մոտ 2 անգամ։ Մեկ ցենտներ մսի ինքնարժեքը կազմել է 82,6, իսկ 100 լիտր կաթինը՝ 6,8 ռուբլի, որը 1,5—2 անգամ ցածր է Արտաշատի շրջանի ուսումնասիրվող կոլտնտեսությունների կովի կաթի ինքնարժեքից։

Հաշվումները ցույց են տվել, որ 100—120 կով ունեցող կաթնաապրանքային ֆերմայում օրական բեռնաշրջանառությունը (կաթի, կերի, գոմաղբի փոխադրումները) կազմում է 12—15 տոննա։ Այդ քանակությամբ բեռի փոխադրումը պահանջում է կենդանի քաշող ուժի և բանվորական ձեռքի մեծ ծախսումներ. իսկ եթե այդ պրոցեսները մեքենայացվեն, ապա դրանք կկրճատվեն 50 և ավելի տոկոսով, կերի կորուստները կվերանան, կբարելավվի անասունների խնամքը և կիջնի կաթի և մսի ինքնարժեքը։

Ներֆերմային տրանսպորտի մեքենայացումը տալիս է մարդ-օրերի զգալի խնայողություն։ Այսպես, Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության կաթնաապրանքային ֆերմայում «ԴՊ—300» կախովի սարքավորման տեղակայումը (որն այժմ հանվում է արտադրությունից և խորհուրդ է տրվում կիրառել ավելի խնայողաբեր անռելս տրանսպորտը) երկու անասնապահների հնարավորություն է տվել 100 գլխանոց կովանոցի 5 տոննայի հասնող գոմաղբը հավաքել 5 մարդ-ժամվա ընթացքում՝ 16,5 մարդ-ժամվա փոխարեն։ Բացի այդ, 3,6 տոննա կերը մեկ օրում մատուցվում է երկու մարդ-ժամվա ընթացքում՝ 21,6 մարդ-ժամվա փոխարեն։ Այսպիսով, այս երկու աշխատանքների արտադրողականությունը բարձրանում է 2—3 անգամ։

Այնուհետև, եթե ձեռքով ջրելու դեպքում 100 կովին ընկնող մեկ օրվա աշխատանքային ծախսումները կազմել են 48 մարդ-ժամ, ապա ավտոխմոցների տեղակայմամբ իսպառ վերացել են ձեռքի աշխատանքի ծախսումները։ Այստեղ մեքենայացվել են նաև կերի մանրացման, տեղափոխման և այլ աշխատանքներ։ Աշխատատար պրոցեսների մեքենայացման շնորհիվ խնայվել է 77,35 մարդ-ժամ, որը տարեկան կազմում է մոտ 3000 մարդ-օր, կամ 19,0 հազար ռուբլի։ Արտադրական պրոցեսների մեքենայացման շնորհիվ 13,6 տոկոսով կրճատվել է անասունները խնամող կոլտնտեսականների թիվը։ Մեքենայացումը ամեն մի անասնապահի հնարավորություն տվեց 9,7 գլուխ անասունի փոխարեն խնամել մինչև 15,2 գլուխ անասուն (տես Վ. Գ. Զուբիեթյան՝ «Անասնաբուծության մեջ կապիտալ ներդրումների տնտեսական էֆեկտիվության հարցի շուրջ»)։

Ուշադրության է արժանի Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության Անասնաբուծության և անասնաբուժության գիտա-հետազոտական ինստիտուտի ստեղծած նոր սարքավորումների ներդրումը Շահումյանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսությունում։ Այդ սարքավորումները 3-ն են, որոնցով մեքենայացվել և ավտոմատացվել են կերի նախապատրաստման ու մատակարարման, կթի և գոմաղբը դուրս տանելու աշխատանքները։ Կերի նախապատրաստման համար կառուցվել է խոհանոց։ Աշխատատար պրոցեսների մեքենայացումը թեթևացրել է անասնապահների աշխատանքը, կրճատել աշխատանքային ծախսումները, իջեցրել անասնաբուծական մթերքների ինքնարժեքը։ Այսպես, 1959 թ. 100 լիտր կաթի ինքնարժեքը կազմել է 9,6, իսկ տավարի մսի մեկ ցենտներինը՝ 44,6 ռուբլի։

Շատ կոլտնտեսություններում անասնաբուծական մթերքների ինքնարժե-



քի բարձր մակարդակը կերի անտնտեսվար ծախսման հետևանք է։ Կերի ծախսման և մթերքների ստացման բալանսը ցույց է տալիս, որ առանձին տնտեսություններում մեկ ցենտներ կաթի և մսի արտադրության վրա 1,5—2 անգամ ավելի շատ կերի միավոր է ծախսվել, քան անհրաժեշտ էր։ Ռացիոնալ չի կազմակերպվում կերակրումը, կերային ռացիոնում դեռևս խիստ ցածր է հյութալի կերի (սիլոս, արմատապտուղներ) բաժինը։ Անվիճելի է ճիշտ կերակրման կազմակերպման նշանակությունը անասնաբուծության մթերատվության բարձրացման և ինքնարժեքի իջեցման գործում։

Կաթնամթերքների ինքնարժեքի իջեցման համար վճռական նշանակություն ունի նաև անասունների ստերջության վերացումը, որը դեռևս մեծ տոկոս է կազմում։ Վերջին երեք տարիներին Արտաշատի շրջանի Վ. Արտաշատի, Այգեզարդի, Ոստանի և այլ կոլտնտեսություններում կովերի ստերջությունը կազմում էր 10—20, երբեմն ավելի տոկոս։ Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր տնտեսությունում կաթի համախառն արտադրանքը 10—20 տոկոսով պակասում է։ Եթե դրան ավելացնենք նաև ստերջ կովերին տրված կերի արժեքը, ապա հասկանալի կդառնա, թե ինչպիսի ռեզերվ է կովերի ստերջության վերացումը։ Եթե լավացվի անասունների խնամքը, աշխատանքը կազմակերպվի առաջավոր անասնապահների օրինակով և իսպառ վերացվի մայրական կազմի ստերջությունը, բոլոր մատղաշները խնամվեն և պահպանվեն ինչպես հարկն է, ապա և՛ կաթը շատ կլինի, և՛ միսը, և՛ կերը իզուր չի ծախսվի։ Տնտեսությունը դրանից օգուտ կստանա, ցածր կլինի կաթի ու մսի ինքնարժեքը։

Մեծ նշանակություն ունի նաև մայրական կազմի ավելացումը։ Այդ կոլտնտեսությունների անասնահոտում մայրական կազմը պետք է հասցնել 50—55 տոկոսի, գոյություն ունեցող 35—40 տոկոսի դիմաց։ Դեռևս լավ չեն կազմակերպվում անասունների բտումն ու գիրացումը. պետությանն են հանձնում երբեմն միջակից ցածր գիրությամբ անասուններ, որի հետևանքով բարձրանում է անասնաբուծական մթերքների ինքնարժեքը։

Սոցիալիստական արտադրության յուրաքանչյուր ճյուղում կան ինքնարժեքի իջեցման ու կուտակումների ավելացման մեծ ռեզերվներ։ Ինքնարժեքի իջեցման օբյեկտիվ հնարավորությունների օգտագործումը շատ բանով կախված է նրանից, թե տնտեսական կադրերը որքան խոր գիտեն արտադրության էկոնոմիկան, կարո՞ղ են գործիմաց կերպով վարել արտադրությունը։ Շատ կարևոր է լավ իմանալ էկոնոմիկայի հարցերը և կարողանալ որոշել աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի ինքնարժեքը, վերլուծել տնտեսական գործունեության արդյունքները։ Կոլտնտեսություններում պլանավորելով արտադրությունը, պետք է կարողանալ ոչ միայն հաշվարկել ինքնարժեքը, այլև փնտրել-գտնել նրա իջեցման հնարավոր ռեզերվները։

Գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցումը վիթխարի ժողովրդա-տնտեսական նշանակություն ունի։ Հաշվված է, որ ինքնարժեքի իջեցման յուրաքանչյուր տոկոսը Արտաշատի շրջանի կոլտնտեսություններում կազմում է մոտ 10700 ռուբլի, իսկ ինքնարժեքի իջեցումը 10 տոկոսով՝ մեկ միլիոն ռուբլի։ Ինչպես ցույց տվեց ինքնարժեքի տարրերի վերլուծությունը, կոլտնտեսությունները հնարավորություն ունեն աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և արտադրության ճիշտ կազմակերպման միջոցով արտադրական ծախսերը կրճատել 40—50 տոկոսով, որը հնարավորություն կտա ինքնարժեքը զգալիորեն իջեցնելու։

---

# ԿԱՎԵԼԱՑՆԵՆՔ ՀԱՑԱՀԱՏԻԿԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Բասարգեչարի շրջանի կոլտնտեսականները բուռն խանդավառությամբ ընդունեցին Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումները և այժմ ձեռնամուխ են եղել դրանց կենսագործմանը։

Բասարգեչարի շրջանը լայն հնարավորություններ ունի հացահատիկային տնտեսության զարգացման բնագավառում լուրջ հաջողությունների հասնելու համար։ Սակայն, պետք է նշել, որ տարիներ շարունակ այդ հնարավորություններն անբավարար էին օգտագործվում. ցածր էր հողագործության կուլտուրան։ Ինչպես նախապատերազմյան, այնպես էլ հետպատերազմյան (1946—1953 թթ.) տարիներին հացահատիկի մեկ հեկտարի միջին բերքատվությունը կազմում էր ընդամենը 5—6 ցենտներ։

Շրջանի պարտիական ու սովետական կազմակերպությունները, կոլտնտեսականներն ու մեխանիզատորները լուրջ եզրակացություններ արեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումի որոշումներից և որոշակի բեկում մտցրին հողագործության կուլտուրայի բարձրացման, մասնավորապես, հացահատիկի արտադրության ավելացման գործում։

ՀԿԿ Բասարգեչարի շրջանային կոմիտեն, սկզբնական պարտիական կազմակերպությունները, շրջանի սովետական և հողային օրգանները բացահայտեցին անցյալում թույլ տրված լուրջ սխալներն ու թերությունները և մշակեցին դրանք վերացնելու կոնկրետ միջոցառումներ։ Կոլտնտեսականների, մեխանիզատորների մշտական ուշադրության առարկան դարձան հողի մշակման, նրա որակի բարձրացման, դաշտային աշխատանքների ժամկետների կրճատման, ագրոկոմպլեքսի կիրառման, հողերի պարարտացման, ոռոգման և մի շարք այլ կարևոր հարցեր։

Անցյալում աշնանացանը սկսվում էր օգոստոս ամսին և ձգձգվում մինչև նոյեմբերի վերջը։ Ցանքն ուշացնելու պատճառով սերմը վատ էր ծլում, բույսերը չէին թփակալում, որի հետևանքով ձմռանը ցրտահարվում էին։ Վերջին տարիներս աշնանացանը կատարվում է սեղմ ժամկետում՝ օգոստոսի կեսերից մինչև սեպտեմբերի վերջը, որի շնորհիվ մինչև ձմեռ բույսերը լավ թփակալում և ցրտադիմացկուն են դառնում։ Ագրոկանոններին համապատասխան գարնանացանը կատարվում է մշակված ցրտահերկի վրա, 7—10 օրվա ընթացքում. կիրառվում է խաչաձև և նեղշար ցանք։

Ամեն տարի ցանքատարածությունները պարարտացնելու համար դաշտ է տեղափոխվում 70—80 հազար տոննա գոմաղբ ու տորֆի մնացորդ։ Վաղ գարնանը գյուղատնտեսական ինքնաթիռների միջոցով կազմակերպվում է աշ-



նանացանի սնուցում։ Դրա հետ միասին վիգզագվում է 7000 հեկտար տարածություն։

Զգալիորեն կրճատվել են բերքահավաքի ժամկետները. շատ կոլտնտեսություններ, Միության առաջավոր կոլտնտեսությունների օրինակով, բերքը հավաքում են մոտ 10 աշխատանքային օրվա ընթացքում։

Խոշոր են շրջանի մեխանիզատորների ծառայությունները գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում։ Այս տեսակետից հիշատակման արժանի են մեխանիզատորներ Ե. Մարգարյանը, Ս. Էլոյանը, Վ. Սաղաթելյանը, Հ. Եղիազարյանը, Ա. Կարապետյանը, Ս. Ալիխե- Նրանք 7—9 օրում ավարտում են գարնանացանի և 10—12 օրում բերքահավաքի աշխատանքները և միշտ էլ բարձր բերք ստանում։ Կոլտնտեսություններում լուրջ աշխատանք է կատարվում տրակտորի և կոմբայնի համար տարածություններ ստեղծելու ուղղությամբ։

Շրջանում լուրջ ուշադրություն հատկացվեց նաև սերմնաբուծության բարելավմանը։ Չէ՞ որ լավագույն սերմացուն բարձր բերքի գրավականն է։ Այս և նման միջոցառումների հաջող կենսագործումը դրական արդյունք տվեց։ Կոլտնտեսություններում տարեցտարի բարձրացավ հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։ Այսպես, 1953 թվականի 18.782 հեկտար հասկավոր կուլտուրաների տարածություններից ստացվել է 134 000 ցենտներ հացահատիկի համախառն բերք, կամ յուրաքանչյուր հեկտարի միջին բերքը կազմել է 6 ցենտներ։ Նույն տարածությունից համապատասխանաբար ստացվել է 1955 թվականին՝ 215.000, հեկտարից՝ 10,6 ցենտներ, 1957 թվականին՝ 264.000, հեկտարից՝ 15,5 ցենտներ, 1958 թվականին՝ 16.683 հեկտար տարածությունից՝ 231.516, հեկտարից՝ 16 ցենտներ։ Նույնիսկ 1960 թվականին, երբ ցանքատարածությունները մեծ չափով տուժեցին երաշտից ու կարկտահարությունից, ստացվեց 197.000 ցենտներ համախառն բերք, մեկ հեկտարից՝ 13,6 ցենտներ միջին բերք, պլանով նախատեսված 13,1 ցենտների դիմաց։

Չնայած այն հանգամանքին, որ ամեն տարի բնակլիմայական պայմանները նույնը չեն լինում, շրջանի առաջավոր կոլտնտեսությունները տարեցտարի անշեղորեն ավելացնում են հասկավոր կուլտուրաների բերքատվությունը. այսպես՝ Նորակերտի կոլտնտեսությունը (նախագահ Հ. Զաքարյան, պարտկազմակերպության քարտուղար Հ. Մկրտչյան) 1960 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, բերքատվությունը բարձրացրել է 5,5 անգամ, յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը 5-ից հասցնելով 27 ցենտների։ 1956 թվականին հեկտարից ստացել է 21, 1957-ին՝ 22, 1958-ին՝ 23, 1959-ին՝ 26, 1960 թվականին՝ 27 ցենտներ բերք։ Շրջկենտրոնի կոլտնտեսությունը (նախագահ Ա. Հարությունյան, պարտկազմակերպության քարտուղար Հ. Բարսեղյան) բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից համապատասխանաբար 6 ցենտներից հասցրել է 20-ի, Կարախանի կոլտնտեսությունը (նախագահ Ի. Իսմայիլով, պարտկազմակերպության քարտուղար Կ. Աբդուլաև)՝ 8-ից 16 ցենտների, Ջախրլուի կոլտնտեսությունը (նախագահ Ս. Հարությունյան, պարտկազմակերպության քարտուղար Ա. Հովհաննիսյան) 5-ից 18 ցենտների, Քյարբիբաշի կոլտնտեսությունը (նախագահ Հ. Մահոլամով, պարտկազմակերպության քարտուղար Մ. Մեիթիև)՝ 6-ից 19 ցենտների, Շիշկայայի կոլտնտեսությունը (նախագահ Մ. Բայրամով, պարտկազմակերպության քարտուղար Մ. Կադիմով)՝ 3-ից 17 ցենտների և այլն։

Այս պերճախոս թվերը լիովին հերքում են մի շարք կոլտնտեսությունների ղեկավարների այն սխալ պնդումը, թե բերքատվության ցածր մակարդակի պատճառը բնակլիմայական անբարենպաստ պայմաններն են։ Այսպես, օրինակ, Նորակերտի և Փոքր Մազրայի կոլտնտեսությունների հողերն իրար կից են, գրեթե միանման. սակայն նույն տարածությունից Նորակերտի կոլտնտեսությունը հեկտարից ստանում է 27 ցենտներ հացահատիկ, իսկ Փոքր Մազրայինը՝ 15,9 ցենտներ։ Ջալա կոչվող հողամասից Նորակերտի կոլտնտեսությունը 300 հեկտար գարնանացանի յուրաքանչյուր հեկտարից ստանում է 42,6 ցենտներ հացահատիկ, իսկ Փոքր Մազրայինը՝ 18։ Գաղտնիքը նրանում է, որ Նորակերտի կոլտնտեսությունը ցանքը կատարում է ընտիր, բարձր բերքատու, կոնդիցիոն սերմացուով, լավ է կազմակերպում ցանքերի մշակումը, բերքահավաքը անկորուստ է կատարում, իսկ Փոքր Մազրայի կոլտնտեսությունը ցանում է ոչ կոնդիցիոն սերմացու, հողը վատ է մշակում, բերքահավաքը շարունակ ձգձգում է։

Հատկանշական է նաև երկու հարևանների՝ Ջախրլուի և Թուսկյուլուի կոլտնտեսությունների օրինակը։ Սրանք կից գյուղեր են և առաջ միավորված էին մի կոլտնտեսության մեջ։ Հողերը բերրիությամբ գրեթե նույնն են. Նույն պայմաններում Ջախրլուի կոլտնտեսությունը տարեցտարի բարձրացնում է բերքը, իսկ Թուսկյուլուի կոլտնտեսությունը՝ ընդհակառակը, անընդհատ իջեցնում է հասկավոր կուլտուրաների բերքատվությունը։ 1960 թվականին Ջախրլուի կոլտնտեսության ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստացվել է միջին հաշվով 18 ցենտներ, իսկ Թուսկյուլուի կոլտնտեսությունից՝ 10։ Նույնը կարելի է ասել նաև Շիշկայայի և Գյունեյի կոլտնտեսությունների մասին։ Առաջինը հեկտարից ստանում է 17, իսկ երկրորդը՝ հազիվ 10 ցենտներ բերք։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ մեր երկրում հացահատիկի արտադրության աճը մեծ է, բայց պահանջմունքներն այնքան են ավելացել, որ այժմ հարկավոր է միանգամայն նոր ձևով դնել հացահատիկի պետական ռեսուրսների ավելացման հարցը։ Պետք է արտադրել այնքան հացահատիկ, որքան անհրաժեշտ է երկրի զարգացման հեռանկարներն իրականացնելու համար։

Այս արդարացի պահանջը լիովին վերաբերում է նաև մեզ։ Ուստի շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունների, կոլտնտեսությունների առաջնահերթ խնդիրն է՝ օգտագործել բոլոր հնարավորությունները հացահատիկի արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու համար։

Հացահատիկի արտադրության ավելացման կարևոր ռեզերվներից մեկն էլ բերքատվության բարձրացումն է։ Իսկ հնարավո՞ր է այդ։ Այո՛, հնարավոր է։ Այդ են ցույց տալիս շրջանի գյուղատնտեսության առաջավորների ձեռք բերած նվաճումները։ Նորակերտի կոլտնտեսության դաշտավարական բրիգադների բրիգադավարներ Հ. Մկրտչյանը և Ա. Ենգիբարյանը գարնանացան ցորենի 150 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 53 ցենտներ բերք, Շիշկայայի կոլտնտեսությունում բրիգադավար Ա. Սալմանովը 33 հեկտար գարնանացանի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 30 ցենտներ։ Ջոդի կոլտնտեսությունում Կ. Օրաչովը իր մշակած 70 հեկտար հասկավոր կուլտուրաների ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից



ստացել է 43 ցենտներ, Բասարգեչարի կոլտնտեսությունը 120 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 43,6 ցենտներ։

Չնայած բարձր բերք ստանալու ռեալ հնարավորություններին, շրջանի շատ կոլտնտեսություններ անտարբերությամբ են անցնում դրանց մոտով։ անբավարար են կիրառում ագրոտեխնիկայի կանոնները, աշխատանքը վատ են կազմակերպում և, ի վերջո, խիստ ցածր բերք են ստանում։ Ջանահմեդի, Ազատի, Նարիմանլուի, Կարճաղբյուրի, Ինակդաղի, Դաշքենդի, Գյունեյի կոլտնտեսությունները, որոնք հացահատիկի ցանքի հսկայական տարածություններ են զբաղեցնում, ստանում են խիստ ցածր բերք, հեկտարից՝ 9—12 ցենտներ։ Սրա պատճառը ոչ թե այն է, որ տվյալ կոլտնտեսությունները գտնվում են հողակլիմայական անբարենպաստ պայմաններում, այլ այն, որ վատ է կազմակերպվում աշխատանքը, չեն կիրառվում ագրոկանոնները։ Այս կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունները ինչպես հարկն է չեն ղեկավարում սոցիալիստական մրցությունը և մասսաների արտադրական ակտիվությունը։

Այժմ Բասարգեչարի շրջանի պարտիական կազմակերպությունները, սովետական ու գյուղատնտեսական օրգանները, կոլտնտեսությունների վարչությունները իրենց բոլոր ջանքերը գործադրում են՝ բոլոր ցանքատարածություններում բերքատվությունը բարձրացնելու, ջրովի հողերի ամեն մի հեկտարից 25 ցենտներ, իսկ անջրդի հողերից՝ 14 ցենտներ բերք ստանալու համար։ Այդ նպատակին հասնելու համար անհրաժեշտ է արմատավորել ճիշտ ցանքաշրջանառություն, լավ կազմակերպել պարարտացման գործը, ինչպես նաև գյուղատնտեսական մյուս աշխատանքները։ Պարարտացման նպատակով նախատեսված է օգտագործել մոտ 90 հազար տոննա գոմաղբ ու տորֆի մնացորդ, 3000 տոննա հանքային պարարտանյութ։ Նորակերտի կոլտնտեսությունն արդեն դաշտ է տեղափոխել 1200 տոննա գոմաղբ. այդ գործը լավ են կազմակերպել նաև Շիշկայայի, Ջախրլուի, Ծովակի, Ջոդի, Ջաղբենդի, Նարիմանլուի և մի շարք այլ կոլտնտեսություններ։ Իսկ Ն. Շորժայի, Սուբաթանի, Վ. Ջաղալուի կոլտնտեսությունները, որոնք անցյալ տարի ցածր բերք ստացան, այս տարի ևս մատների արանքով են նայում պարարտացման աշխատանքներին։

Բերքատվության բարձրացման համար կարևոր ագրոձեռնարկումներ են վաղ գարնանը աշնանացանի սնուցումն ու զիգզագումը։ Հաշվի առնելով այդ, կոլտնտեսություններն աշնանացանը գարնանը սնուցում են ու զիգզագում։

Կազմակերպված աշխատանքի շնորհիվ գյուղատնտեսական բոլոր մեքենաները վերանորոգված և պատրաստ են դաշտային աշխատանքներին։

Հացահատիկի արտադրության ավելացման մյուս կարևոր ռեզերվներից մեկը ոռոգման լավ կազմակերպումն է ու ոռոգելի տարածությունների ընդարձակումը։ Ջրատար առուները նորոգելու, ջրի ռեսուրսները լավ օգտագործելու դեպքում հնարավոր է շրջանում ջրովի տարածություններն ընդարձակել մոտ 1000 հեկտարով, որը լրացուցիչ կտա 10.000 ցենտներ հացահատիկ։

Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրությունը երեք տարի առաջ ավարտեց Գիլլի կոչվող ճահճի չորացումը։ Գյուղատնտեսության շրջանառության մեջ պետք է մտներ շուրջ 1700 հեկտար հող, բայց չորացում կատարելուց հետո լուրջ ուշադրություն չնվիրվեց ոռոգման աշխատանքներին, որի հետևանքով նշված տարածության զգալի մասն այրվում, շարքից դուրս

է գալիս։ Ոռոգման գործը կազմակերպելու դեպքում՝ այդ տարածության յուրաքանչյուր հեկտարից հնարավոր կլինի ստանալ 30—35 ցենտներ հացահատիկի բերք։ Հուսանք, որ շրջանային կազմակերպությունները ու Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրությունը կձեռնարկեն այդ գործին և այն հաջողությամբ կավարտեն։

Հացահատիկի տնտեսության զարգացման գործում վճռական նշանակություն ունի սերմնաբուծության լավ կազմակերպումը։ Վերջին տարիներս այդ ուղղությամբ շրջանում կատարվել է որոշ դրական աշխատանք։ Նորակերտի սերմնաբուծական տնտեսության բազայի վրա շրջանի շատ կոլտնտեսություններում ցանքը կատարվում է տեսակավոր շրջանացված սերմացուներով։

Շրջկենտրոնի, Շիշկայայի, Նորակերտի, Ջախրլուի, Կարճաղբյուրի, Մ. Մազրայի կոլտնտեսությունների դաշտերում փորձարկվում են սերմի նոր տեսակներ։ Օրինակ, շրջկենտրոնի կոլտնտեսությունը 100 հեկտար տարածության վրա ցանել է ալ-մարգարիտ կոչվող սերմը։ Վերջին տարիների փորձը ցույց է տվել, որ այն օժտված է բարձր հատկություններով։ Նույնքան տարածության վրա ցանված ուկրաինկա տեսակի հացահատիկը տուժեց ժանգ հիվանդությունից ու քամիներից, իսկ ալ-մարգարիտը մնաց անվնաս։ Ուկրաինկայի մեկ հեկտարից ստացվեց 10 ցենտներ բերք, իսկ ալ-մարգարիտից՝ 22 ցենտներ։ Տարօրինակ է, որ գիտա-հետազոտական համապատասխան հիմնարկությունները մինչև օրս չեն երաշխավորում ալ-մարգարիտ տեսակի շրջանացումը։ Այս կապակցությամբ անհրաժեշտ ենք համարում նշել, որ շրջանում սելեկցիոն աշխատանքները անբավարար են. թույլ է գիտա-հետազոտական հիմնարկների կապը կոլտնտեսությունների հետ։

Շրջանի կոլտնտեսականները մեծ եռանդով աշխատում են ընթացիկ տարվա գարնանացանի համար պատրաստել պահանջվող քանակությամբ սերմացու։ Բոլոր կոլտնտեսություններն արդեն ապահովված են անհրաժեշտ չափով բարձրորակ սերմացուով ինչպես գարնանացանի, այնպես էլ աշնանացանի վնասված տարածություններում վերացանք կատարելու համար։

Հողագործության կուլտուրայի բարձրացման համար խոշոր նշանակություն ունի գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացումը։ Պարտիայի ու կառավարության մշտական հոգատարության շնորհիվ տարեցտարի բարձրանում է շրջանի գյուղատնտեսության մեքենայական հագեցվածության աստիճանը։ Բավական է նշել, որ այս տարվա գարնան դաշտային աշխատանքներին մասնակցելու են 204 տրակտոր։

Մեքենաների քանակն ավելացնելու շնորհիվ զգալի չափով իջել է մեկ տրակտորի բեռնվածությունը, որը հնարավորություն է տալիս համեմատաբար սեղմ ժամկետում կատարելու դաշտային աշխատանքները։ Շրջանի կոլտնտեսություններում գրեթե ամբողջովին մեքենայացված են հասկավոր կուլտուրաների վարը, ցանքն ու բերքահավաքը։

Բերքատվության բարձրացման, հացահատիկի արտադրության ավելացման գործում խոշոր նշանակություն ունի գյուղատնտեսական կուլտուրաների ճիշտ տեղադրումը, ցանքերի ստրուկտուրան։ Անցյալում լուրջ սխալ է թույլ տրվել ցանքերի ստրուկտուրայի գործում. վարելահողի 43,3 տոկոսը զբաղեցնում են հացահատիկի ցանքատարածությունները, իսկ 18 տոկոսը՝ խոտաբույսերը։ Այս տարի միջոցներ են ձեռնարկվում ի հաշիվ ցելի ընդարձակելու ցանքատարածությունները։



Այս միջոցառումները հնարավորություն են ընձեռում առաջիկա մի քանի տարում հացահատիկի արտադրությունը շրջանում հասցնելու 1,5 միլիոն փթի։ Այդ միանգամայն հնարավոր է, որովհետև 1957 թվականին ստացվել է դրանից ավելի բերք։

Հացահատիկի բերքատվության բարձրացումը հնարավորություն կտա բավարարելու ո՛չ միայն պարենային, այլև ֆուրաժային հացահատիկի պահանջը։ Նախատեսվում է մեր շրջանում տարեկան առանձնացնել 30—40 հազար ցենտներ հատիկաֆուրաժ և դրանով կերակրել անասուններին։ Մեծ չափով ավելանալու է եգիպտացորենի (սիլոսի համար) և բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը։ Ընթացիկ և հաջորդ տարիներին եգիպտացորենի ցանքատարածությունը հասցվելու է 1500, բազմամյա խոտաբույսերինը՝ 7000 հեկտարի։

Անցյալ տարի շրջկենտրոնի, Մ. Մազրայի, Կոշաբուլաղի և մի շարք այլ գյուղերի կոլտնտեսություններ կորնգանի երկու հար կատարեցին, ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացան 50—60 ցենտներ խոտ։

Անցյալ տարի շրջանի կոլտնտեսությունները կատարեցին կերի կուտակման սոցիալիստական պարտավորությունները։ Այս տարի կոլտնտեսությունները ձգտում են կորնգանի ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից ստանալ 40 ցենտներ բերք, 1960 թվականի 32 ցենտների դիմաց։ 1955 թվականի համեմատությամբ հյութալի կերի արտադրությունը կավելանա 3—4 անգամ։ Անասունների համար համապատասխան չափով կեր արտադրելը հնարավորություն կտա ապահովելու անասունների գլխաքանակի ու մթերատվության գծով նախատեսված աճը։

Այսպիսով, հացահատիկային տնտեսության զարգացման բազայի վրա հնարավոր է ավելացնել նաև անասնաբուծական մթերքների արտադրությունը, դրանով իսկ խոշոր չափով նպաստել շրջանի գյուղատնտեսության էկոնոմիկայի ամրապնդմանը։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը կոչ արեց պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, սովխոզների, նորոգման ձեռնարկությունների բանվորներին, գյուղատնտեսության մասնագետներին, բոլոր աշխատավորներին՝ բազմապատկել ջանքերը սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման, հողագործության և անասնաբուծական մթերքների առատություն ստեղծելու համար մղվող պայքարում։

Մեր շրջանի կոլտնտեսային գյուղի աշխատավորները ոչ մի ջանք չեն խնայի պարտիայի մարտական կոչին կոնկրետ աշխատանքով պատասխանելու համար։ Մտնելով պարտիայի XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, նրանք պայքարում են յոթնամյակի երրորդ տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու համար։

Ս. ՀԱԿՈԲՅԱՆ

ՀԿՊ Բասարգեչարի շրջկոմի քարտուղար

# ԳՈՐԾԵՐԸ ԼԱՎ ԵՆ ԸՆԹԱՆՈՒՄ

Կոմունիստական պարտիան միշտ էլ մեծ ուշադրություն է դարձնում գյուղատնտեսության զարգացմանը։ Միայն վերջին տարիներս մեր պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեն իր մի շարք պլենումներում՝ գյուղատնտեսության առաջավորների ու գիտության գործիչների հետ համատեղ քննարկել է գյուղատնտեսության զարգացման հետ կապված հարցերը։ Մեր երկրի կոլտնտեսային գյուղացիությունն ու սովխոզների աշխատողները մեծ ջանքեր գործադրելով իրագործում են պարտիայի որոշումներն ու տարեցտարի ավելացնում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի այս տարվա Հունվարյան պլենումը համակողմանիորեն քննելով մեր երկրի գյուղատնտեսության արդի վիճակն ու նրա հետագա զարգացման խնդիրը՝ մշակեց կոնկրետ միջոցառումներ գյուղատնտեսական մթերքների արտադրության բուռն վերելքն ապահովելու համար։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումները, պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովի ճառը ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր սովխոզի կոլեկտիվում առաջ են բերել քաղաքական մեծ ակտիվություն և արտադրական բուռն խանդավառություն։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը գտավ անհրաժեշտ՝ պետության պահանջմունքների լրիվ բավարարման համար Սովետական Միությունում առաջիկա տարիներին հացահատիկի գնումները հասցնել 4 միլիարդ 200 միլիոն փթի, մսինը՝ 13 միլիոն տոննայի, կաթինը՝ 50 միլիոն տոննայի։ Պլենումը նշեց, որ հացահատիկի, կաթի, մսի այսչափ գնումները միանգամայն հնարավոր են և տեղական պարտիական ու սովետական կազմակերպություններին առաջարկեց մշակել կոնկրետ միջոցառումներ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։ Այդ միջոցառումները պետք է մշակվեն ներքևից՝ բրիգադայից, ֆերմայից, սովխոզից ու կոլտնտեսությունից։

Այդ մեծ գործում իր համեստ բաժինն է ներդնելու նաև Կամոյի անվան քաղաքի կաթնաանասնապահական սովխոզը, որն արդեն գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում հասել է որոշակի հաջողությունների։ Սովխոզի ողջ կոլեկտիվի գործադրած ջանքերի շնորհիվ 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 20, իսկ միայն կովերինը՝ 47 տոկոսով։ Մեկ տարվա ընթացքում խոզերի գլխաքանակն ավելացել է 80, թռչուններինը՝ 42, ոչխարներինը՝ 10,9 տոկոսով։

Անասունների գլխաքանակի աճի պետական առաջադրանքները կատա-



րելու, անասունների խնամքը բարելավելու շնորհիվ 1960 թվականին զգալիորեն ավելացավ անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Եթե 1959 թվականին սովխոզը պետությանը հանձնել է կաթ՝ 7316, միս՝ 1378, բուրդ՝ 310 ցենտներ, ձու՝ 48 100 հատ, ապա 1960 թվականին հանձնեց կաթ՝ 9318, միս՝ 2259 ցենտներ և ձու՝ 178 հազար հատ։ Մսի արտադրության մեջ զգալիորեն բարձրացավ թռչունի մսի տեսակարար կշիռը, որը 1959 թվականի 7 ցենտներից 1960 թվականին հասավ 48-ի։

Կենսագործելով պարտիայի ու կառավարության ցուցումները, սովխոզի կոլեկտիվը կարողացավ ապահովել մսամթերման հանձնված անասունների բարձր քաշը։ Անցյալ տարի մացու ոչխարներից յուրաքանչյուրի միջին քաշը եղել է 47 կիլոգրամ, խոշոր եղջերավոր անասուններինը՝ 217 կիլոգրամ։ Հանձնված մսի 410 ցենտները եղել է միջակից բարձր գիրությամբ, իսկ մնացածը՝ միջակ որակի։ Այս հնարավորություն է տվել զգալիորեն պահպանելու անասունների գլխաքանակը։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը առաջին հերթին արդյունք է այն բանի, որ սովխոզը մեծ ուշադրություն է հատկացրել կերի կայուն բազայի ստեղծմանը։

Անցյալներում մեզ մոտ կերի համար գլխավորապես կուտակվում էր խոտ ու ծղոտ։ Իհարկե, միայն դրանցով անասնաբուծությունը զարգացնել և անասնաբուծական մթերքների արտադրանքն ավելացնել հնարավոր չէր։ Դրա համար էլ սովխոզի կոլեկտիվը, բնական խոտհարքները բարելավելու հետ մեկտեղ, աշխատեց կերի բաժնում ավելացնել եգիպտացորենի, կորնգանի, հատիկի (գարի) և կարտոֆիլի մասը։ Այդ ուղղությամբ իրագործված միջոցառումները տվել են լավ արդյունքներ։ 1959 թվականի 34 751 ցենտների դիմաց 1960 թվականին կուտակված է 51 244 ցենտներ խոտ, որից ավելի քան 8 հազարը՝ կորնգան։ Անասուններին կերակրելու համար առանձնացված է 700 տոննա գարի և 456 տոննա կարտոֆիլ։

Սովխոզի շատ բանվորներ, պատվով կատարելով իրենց ստանձնած պարտավորությունները, անցյալ տարի արտադրական լավագույն ցուցանիշների հասան։ Առաջավոր անասնապահ, կթվոր Արամայիս Միրիջյանը իր խնամած յուրաքանչյուր կովից ստացավ 2460 կիլոգրամ, իսկ Արմենուհի Գևորգյանը՝ 2566 կիլոգրամ կաթ։ Ծխախոտագործության օղակավարուհի Գոհար Ջաքոյանը 6,6 հեկտար ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով հավաքեց 34,5 ցենտներ բերք։ Հովիվներից Ս. Գալոյանը իր խնամած հոտի յուրաքանչյուր ոչխարից ստացել է 6,1, իսկ Պ. Կռոյանը՝ 5,8 կիլոգրամ բուրդ։

Սովխոզի արտադրական բոլոր ճյուղերում կիրառվում է վարձատրության պրոգրեսիվ ձև. արտադրական նորմաները գերակատարողները և որակով գյուղատնտեսական մթերքներ արտադրողները ստանում են լրացուցիչ վարձատրություն։ Այսպես՝ բրդի արտադրության իրենց առաջադրանքները գերակատարող հովիվները ստացել են մոտ 2000 ռուբլի։ Հովիվներ Մայիս և Ալիկ Խաչիկյանները ու Արհեստ Քեոյանը միջակից բարձր մացու ոչխարներ հանձնելու համար ստացել են 200 ռուբլի։ Որոշված է պլանից ավելի կթած յուրաքանչյուր ցենտներ կաթի համար լրացուցիչ վարձատրել 1 ռուբլի 50 կոպեկ։ Կթվորներն ու ֆերմաների վարիչները լրացուցիչ վարձատրություն են

ստանում 3,6-ի փոխարեն 3,9 և 4 տոկոս յուղայնություն պարունակող կաթ հանձնելու համար։

Վարձատրության այս ձևը խրախուսում է անասնապահներին ու դաշտավարներին՝ իրենց բոլոր ջանքերը ներդնել ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ արտադրելու համար։

Ինժեներ մեխանիկ Հրաչյա Գզրարյանը տրակտորի սուզակները (պլուժները) հարմարեցրել է հրամուղին (ֆորսունկային)՝ անասնապահական ֆերմաներում ջուր տաքացնելու համար, որի շնորհիվ տնտեսվում են վառելանյութ ու բանվորական ձեռք։ Եթե առաջներում միայն վառելիքի համար ծախսվում էր 7200 ռուբլի, ապա այժմ ծախսվում է ընդամենը 396 ռուբլի։

Սովխոզի պարտիական կազմակերպությունը սիստեմատիկաբար ընդհանրացնում է արտադրության առաջավորների ու նորարարների աշխատանքի փորձը, այն դարձնում աշխատավորների սեփականությունը։

Իհարկե, այս ցուցանիշները մեր սովխոզի բանվորների ու ծառայողների համար գոհացուցիչ չեն։ Սովխոզի կոլեկտիվն իր ընդհանուր ժողովում քննարկելով ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումը, գտավ, որ մեր սովխոզը բոլոր հնարավորություններն ունի ժամկետից շուտ կատարելու գյուղատնտեսական մթերքների արտադրության յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքները և Հայրենիքին ավելի շատ հացահատիկ, միս, կաթ, բուրդ, ձու տալու։

Մեր սովխոզի հետագա վերելքի համար կարևոր նշանակություն ունի հացահատիկային տնտեսության զարգացումը, հատկապես գարու և եգիպտացորենի արտադրության ավելացումը։

Սովխոզի կոլեկտիվը պարտավորվել՝ հողագործության կուլտուրան բարձրացնելու, հասկավոր կուլտուրաների ցանքը, մշակությունը և բերքահավաքը լավ կազմակերպելու և կարճ ժամկետում կատարելու միջոցով յուրաքանչյուր հեկտարից անցյալ տարվա 8 ցենտների դիմաց այս տարի ստանալ 12 ցենտներ ցորեն, գարու բերքատվությունը 9,6 ցենտներից հասցնել 12-ի։ Զգալիորեն ավելանալու է դաշտավարության մյուս կուլտուրաների՝ կարտոֆիլի, ծխախոտի, բանջարեղենի համախառն բերքը։

Յոթնամյակի երրորդ տարում սովխոզում զգալիորեն ավելանալու է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Նախատեսված է անցյալ տարվա համեմատությամբ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացնել 14,9 (այդ թվում կովերինը՝ 16,5), մանր եղջերավոր անասուններինը՝ 7, խոզերինը՝ 41, թռչուններինը՝ 32 տոկոսով։ Սովխոզի կոլեկտիվը պայքարում է այս տարի, 1960 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունն ավելացնելու 250, կաթինը՝ ավելի քան 1700, բրդինը՝ մոտ 40 ցենտներով, ձվինը՝ 120 հազար հատով։

Սովխոզի բանվորները ոգեշնչված ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումներով, համառորեն պայքարում են հենց հունվար ամսից իրենց ստանձնած պարտավորությունները անթերի կատարելու և պարտիայի XXII համագումարը արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու համար։

Գարնանացան կուլտուրաների ցանքի պլանը լրիվին կատարելու համար առանձնացված է անհրաժեշտ քանակությամբ սերմացու, որը համապատասխանում է կոնդիցիային։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի այս տարվա Հունվարյան պլենումի որո-



շումների կենսագործման համար ռեսպուբլիկական կազմակերպությունները ևս պետք է ջանք չխնայեն՝ օգնելու սովխոզներին ու կոլտնտեսություններին՝ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում։

Մեր սովխոզում խիստ անհրաժեշտ է տեղադրել էլեկտրակթի ագրեգատներ։ Այն մեծ չափով կնպաստի աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու զգալիորեն կիջեցնի կաթի ինքնարժեքը։ Սակայն գյուղատնտեսական օրգաններն ու մատակարարող կազմակերպությունները մեր բազմիցս պահանջներից հետո էլ այդ գործում մեզ չեն օգնում։

Կամ, վերցնենք մի ուրիշ, ավելի կարևոր հարց—արոտավայրերում անասուններին ջրով ապահովելու հարցը։ Ամառը անասուններին ջրելու համար մենք Կամո քաղաքից մեքենաներով ջուր ենք փոխադրում արոտավայրերը։ Հաճախ մեքենաները խափանվում են, ջուրը ժամանակին տեղ չի հասնում, որի հետևանքով էլ խիստ պակասում է արտադրվող կաթի քանակը։

Դեռևս 1959 թվականին Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը որոշել է ջրով ապահովել սովխոզի Սուրաշլու կոչվող ամառային արոտավայրը։ Նախագիծն արդեն կազմված է, բայց ռեսպուբլիկայի Պետպլանը խողովակներ չի հատկացնում, որի պատճառով էլ գործը ձգձգվում է։

Ներկայումս խիստ հրատապ է անասունների ցեղի բարելավման խնդիրը։ Ռեսպուբլիկայի Մինիստրների Սովետի որոշմամբ Հայանասնագրասենյակը պարտավոր է յուրաքանչյուր տարի մեզ հանձնել որոշակի քանակությամբ զտիր ցեղի երինջներ։ Բայց իրականում ոչինչ չի արվում այդ ուղղությամբ։ Անհրաժեշտ է ռեսպուբլիկական կազմակերպությունների գործնական օգնությունն այդ հարցերի արագ լուծման համար, որը խոշոր չափով կնպաստի գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը։

Նոր տարվա հենց սկզբից սովխոզի գործերը վատ չեն գնում։ Հունվարին արտադրված և պետությանն է հանձնված 357 ցենտներ կաթ, 80 ցենտներ միս (որից 9-ը թռչունի) և 10 600 հատ ձու։ Այս ցուցանիշները, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, զգալիորեն բարձր են։ Այդ ցույց է տալիս, որ սովխոզի բանվորներն ու ծառայողները պատվով կկատարեն գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ ստանձնած սոցիալիստական պարտավորությունը։

Հ. ԿՈՒՌՈՅԱՆ

Կամո քաղաքի սովխոզի դիրեկտոր,
Սոցիալիստական Աշխատանքի Հերոս

# ԿՐԿՆԱՊԱՏԿՎԱԾ ՋԱՆՔԵՐՈՎ

Ինձ բախտ վիճակվեց ներկա գտնվել ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի այս տարվա Հունվարյան պլենումին, որին մասնակցում էին մեր միութենական ռեսպուբլիկաների, երկրամասերի և մարզերի պարտիական ու սովետական ղեկավար աշխատողներ, գյուղատնտեսական գիտության գործիչներ և արտադրության առաջավորներ։

Պարտիայի Կենտկոմի պլենումում արտասանած ճառում՝ Ն. Ս. Խրուշչովը խորապես ընդհանրացնելով գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար պայքարի փորձը, միաժամանակ խիստ կերպով քննադատեց գյուղատնտեսության ասպարեզում եղած թերությունները և նշեց այն ռեզերվները, որոնց խելացի օգտագործման շնորհիվ հնարավոր է ավելացնել հացահատիկի, կաթի, մսի, բրդի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումում ելույթ ունեցան նաև գյուղատնտեսական արտադրության բազմաթիվ առաջավորներ։ Նրանք շատ համեստ կերպով պատմեցին իրենց հաջողությունների մասին։ Դաղստանի ԱՍՍՌ-ի «Զերվլեննիե Բուրունի» սովխոզի ավագ հովիվ Դ. Ա. Մախսուդովը ասաց, որ 1960 թվականին իր պահպանած հոտի յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացել է 120 գառ և յուրաքանչյուր ոչխարից 8,2 կիլոգրամ բուրդ։ Սարատովի մարզի Միչուրինի անվան կոլտնտեսության նախագահ Ա. Ա. Զուսյանը իր ելույթում նշեց, որ, չնայած անցյալ տարվա երաշտին, իրենց կոլտնտեսությունը ագրոտեխնիկական կանոնների պահպանման շնորհիվ յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է հացահատիկ՝ 16,8, շաքարի ճակընդեղ՝ 160, արևածաղիկ՝ 12 ցենտներ։ Սումսկի մարզի Լենինի անվան կոլտնտեսության կթվորուհի, Սոցիալիստական Աշխատանքի կրկնակի Հերոս Մ. Խ. Սավչենկոն պլենումի մասնակիցներին պատմեց, թե ինչպես է իր խնամած յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասցրել 8 905 կիլոգրամի։

Սոցիալիստական գյուղատնտեսության մեջ այսպիսի ջահակիրներ շատ կան։ Երբ նրանցից ամենաառաջավորները հանդես էին գալիս պլենումում, ամբողջ դահլիճը դիմավորում էր բուռն ծափահարություններով։

Կրեմլի մեծ պալատի դահլիճում նստած, երբ լսում էի ընկեր Ն. Ս. Խրուշչովի ճառը և գյուղատնտեսության բնագավառում աշխատող ջահակիրների ելույթները, մտածում էի. չէ՞ որ յուրաքանչյուր կոլտնտեսական, բրիգադա, կոլտնտեսություն ու սովխոզ կարող է գործել առաջավորների պես և մեր երկրում ստեղծել գյուղատնտեսական մթերքների առատություն։

Գյուղատնտեսական, հատկապես անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում վերջին երկու տարում զգալի հաջողությունների է հասել նաև մեր կոլտնտեսությունը։ Այդ, առաջին հերթին, արդյունք



է այն բանի, որ յոթնամյա պլանը կազմելիս կոլտնտեսության վարչությունն ու պարտիական կազմակերպությունը մեծ տեղ հատկացրին կերի կայուն բազա ստեղծելու գործին։

Տարիների փորձը ցույց է տվել, որ եթե բնական խոտհարքը ինչպես հարկն է չի բարելավվում, լավ բերք չի ստացվում։ Դրա համար էլ կոլտնտեսությունը 1959—1960 թվականներին մեծ գործ կատարեց խոտհարքների մակերեսը բարելավելու և պարարտացնելու համար։ Խոտհարքի ամբողջ տարածությունն ամեն տարի փոցխվում ու սկավառակվում է։ Խոտհարքները պարարտացվում են գոմաղբով ու քիմիական պարարտանյութերով։

Բնական խոտհարքները բարելավելու հետ միասին գրեթե կրկնապատկեցինք ցանովի խոտերի տարածությունը։ Մեր կոլտնտեսության բնա-կլիմայական պայմաններում ավելի ձեռնտու է ցանել գյուլուլ-վարսակի և սիսեռ-վարսակի խառնուրդներ (որպես միամյա բույսեր), երեքնուկ և տիմաֆեյկա (որպես բազմամյա բույսեր)։

Կոլտնտեսության վարչության, պարտիական կազմակերպության միջոցառումները և բոլոր կոլտնտեսականների գործադրած ջանքերը պսակվեցին հաջողությամբ։ Եթե 1958 թվականին մեր կոլտնտեսությունը կուտակել էր ընդամենը 649 տոննա խոտ, ապա 1959 թվականին կուտակեց 1255, իսկ 1960 թվականին՝ 1716 տոննա խոտ։ Նույն ժամանակամիջոցում գրեթե 1000 տոննայով ավելի սիլոս պատրաստվեց։

Եթե անցյալներում գարնանամուտին անասուններին կերակրելու համար ստիպված էինք հարևան շրջաններից խոտ և այլ կեր գնել, կամ դիմել պետության օգնությանը որպեսզի անասուններին կերով ապահովենք մինչև արոտ դուրս բերելը, ապա վերջին երկու տարում մենք այնքան կեր ենք կուտակել, որ նրանց կերակրելուց բացի, դրա որոշ մասը թողնում ենք հաջորդ տարվա համար։ Օրինակ, մեր մոտավոր հաշիվներով անցյալ տարվա կուտակած խոտից մոտ 300 տոննա կմնա պահեստում։

Կերի կայուն բազայի ստեղծումը հնարավորություն տվեց զգալիորեն ավելացնելու հանրային հոտի գլխաքանակը և շեշտակիորեն բարձրացնելու անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Մեր կոլտնտեսության հողակլիմայական պայմաններն առավելապես նպաստավոր են տավարաբուծության, խոզաբուծության և թռչնաբուծության զարգացման համար։ Վերջին երկու տարում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կոլտնտեսությունում ավելացել է 136-ով, այդ թվում կովերինը՝ 51-ով։ Նույն ժամանակամիջոցում խոզերի գլխաքանակն ավելացել է մոտ 100-ով, իսկ թռչուններինը՝ 1142-ով։ Անասունների գլխաքանակը ավելացել է հիմնականում սեփական հոտի վերարտադրության միջոցով։

Կոլտնտեսությունում մեծ ուշադրություն է հատկացվում անասունների ցեղի ազնվացմանը և տեղի պայմանների ընտելացմանը։ Տարիների փորձը ցույց է տվել, որ մեր կոլտնտեսության հողակլիմայական պայմաններում լավ է աճում ու բարձր արդյունք է տալիս «Կովկասյան գորշ» ցեղը։ Դրա համար էլ մենք առավելապես աճեցնում ենք այդ ցեղը, որի սերնդից ստացած երինջների մի մասը պահում ենք մեր կոլտնտեսության համար, իսկ մյուս մասը և ցուլիկները վաճառում հարևան ու եղբայրական ռեսպուբլիկաների կոլտնտեսություններին։

«Կովկասյան գորշ» ցեղի կովերն աչքի են ընկնում առավելապես բարձր

կաթնատվությամբ։ Բարձր է նաև նրանց մսատվությունը. երեք տարեկանից բարձր անասունի կենդանի քաշը հասնում է մինչև 600 կիլոգրամի։

Անցյալ տարի մեր կոլտնտեսությունը իր ֆերմայում եղած յուրաքանչյուր կովից ստացավ 3112 կիլոգրամ կաթ և կաթի համախառն արտադրանքը հասցրեց ավելի քան 100 54 ցենտների, որը 1958 թվականի համեմատությամբ ավելի էր 2233 ցենտներով։ Երկու տարում յուրաքանչյուր կովի կաթնատվությունը ավելացել է 398 կիլոգրամով։ Եթե 1958 թվականին կոլտնտեսությունն արտադրել էր ընդամենը 578 ցենտներ միս և պետությանը վաճառել 223 ցենտներ, ապա 1960 թվականին արտադրել է 997 և պետությանը վաճառել 589 ցենտներ միս։ Նույն ժամանակաշրջանում խոզի մսի արտադրությունն ավելացել է 2,5, իսկ վաճառքը՝ 3,1 անգամ, ձվի արտադրությունը՝ 4,5, իսկ վաճառքը՝ 9,2 անգամ։

Յուրաքանչյուր 100 հեկտար օգտակար հողատարածության հաշվով անցյալ տարի կոլտնտեսությունն արտադրել է կաթ՝ 494, միս՝ 52,7 ցենտներ։ Այժմ մեր կոլտնտեսությունը յուրաքանչյուր 100 հեկտար օգտակար հողատարածության հաշվով ունի 44,4 գլուխ խոշոր եղջերավոր անասուն (որից 17,2 կով), 48,8 խոզ։

Մեր կոլտնտեսությունն էլ ունի այնպիսի առաջավոր աշխատողներ, որոնք իրենց աղնիվ ու նվիրական աշխատանքով տարեցտարի ավելացնում են անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Նրանք այսօր հայտնի են ո՛չ միայն մեր կոլտնտեսությունում, այլև շրջանում և նրա սահմաններից դուրս։ Կթվորուհի Եկատերինա Զոլնիկովան կոլտնտեսության արտադրության մեջ աշխատում է ավելի քան 25 տարի։ Այդ ժամանակաշրջանում նա իր խնամած կովերից ստացել է մոտ մեկ միլիոն կիլոգրամ կաթ։ Միայն անցյալ տարի նա իր խնամած յուրաքանչյուր կովից ստացավ 3726 կիլոգրամ կաթ։ Հանրային արտադրության մեջ կատարած իր աչքի ընկնող աշխատանքի համար Ե. Զոլնիկովան պարգևատրվել է Լենինի շքանշանով։

Անցյալ տարի իրենց խնամած յուրաքանչյուր կովից կթվորուհի, Լենինի շքանշանակիր Քսենյա Եկիմովան ստացավ 3397, իսկ ամուսիններ Հովսեփ և Միրոն Պողոսյանները՝ 3500 կիլոգրամ կաթ։ Անասնապահներ Կարա Օմարովը, Իսկանդար Իսմայիլովը և Սամսոն Անտոնյանը ամառային արոտի ժամանակաշրջանում իրենց խնամած յուրաքանչյուր անասունի քաշը օրական ավելացնում են մոտ 800 գրամով։ Երկար տարիների հորթապահ Տատյանա Յակովլևնան իր խնամած 60 հորթը պահպանեց անկորուստ, յուրաքանչյուրի քաշը ավելացնելով օրական 650—700 գրամով։

Արտադրության այսպիսի առաջավորներին բացի բարոյական խրախուսանքից քաջալերում ենք նաև նյութապես, սահմանելով պարգև-հավելում։ Օրինակ, խոտհնձի ժամանակ, երբ հնձվորներն ու խոտ հավաքողները կատարում են իրենց առաջադրանքը, որպես հավելյալ վարձատրություն ստանում են հնձած խոտի 5 տոկոսը։

Գյուղատնտեսության զարգացման շեշտակի վերելքն ապահովելու գործում կարևոր նշանակություն ունի դաշտավարության և անասնաբուծության կոմպլեքսային մեքենայացումը։ Այն հնարավորություն է տալիս զգալիորեն ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու իջեցնելու նրա ինքնարժեքը։ Մեր կոլտնտեսությունում լիովին մեքենայացված են խոտի հունձն ու կուտակումը, կովերին գոմում ջրելը և աղբը դուրս բերելը։



Անցյալ տարի անասնաբուծական ֆերմայի արտադրած կաթի յուրաքանչյուր կիլոգրամի ինքնարժեքը կազմեց 8 կոպեկ, իսկ տավարի մսինը (կենդանի քաշը)՝ 35—40 կոպեկ։

Իհարկե, հանրային արտադրության մեքենայացման ներկա մակարդակը մեզ չի գոհացնում. գործնական քայլեր են արվում առաջիկայում մեքենայացնելու կովերի կիթը, ինչպես նաև դաշտավարության ու անասնապահության աշխատատար բազմաթիվ պրոցեսներ։

Հանրային արտադրության, հատկապես անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումը հնարավորություն տվեց զգալիորեն մեծացնելու կոլտնտեսության եկամուտը, որի շնորհիվ մեծ չափով բարձրացավ կոլտնտեսականների վարձատրության գումարը։ Եթե 1958 թվականին կոլտնտեսությունը ստացել է 119.000 ռուբլու եկամուտ, ապա անցյալ տարի ստացավ մոտ 260 հազար ռուբլի (նոր դրամով)։ Կոլտնտեսությունում կիրառվում է դրամական երաշխավորված վարձատրության սիստեմը. 1960 թվականին հանրային արտադրության մեջ աշխատած ամեն մի կոլտնտեսական ամսական վաստակել է 50—100 ռուբլի։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը պարտիական կազմակերպություններին և գյուղատնտեսության բնագավառի աշխատողներին կոչ արեց բազմապատկել ջանքերը՝ հացահատիկի, կաթի, մսի, բրդի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու համար։

Արձագանքելով այդ կոչին, մեր կոլտնտեսությունում, ի պատիվ ՍՄԿԿ XXII համագումարի, ծավալվել է սոցիալիստական մրցությունը՝ գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։ Կոլտնտեսության ընդհանուր ժողովը որոշել է պարտիայի համագումարի բացման օրը դիմավորել կաթի, մսի, բրդի, ձվի վաճառքի ուղղությամբ ստանձնած պարտավորությունները լրիվ կատարած։ Կոլտնտեսականները պարտավորվել են յոթնամյա պլանով 1965 թվականի համար նախատեսված խոշոր եղջերավոր անասունների, խոզերի ու թռչունների գլխաքանակի աճի, մսի ու ձվի արտադրության առաջադրանքները կատարել այս տարի, իսկ կովերի գլխաքանակի աճի և կաթի արտադրության առաջադրանքները՝ եկող տարի—յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրելով 537 ցենտներ կաթ։

Մեր կոլտնտեսության անդամները այս պարտավորությունը պատվով կկատարեն, որովհետև նրանց հայրենասիրական ձգտումների է ոգեշնչում Կոմունիստական պարտիան։

Գ. ԱՎԴԱՅԱՆ

Կալինինոյի շրջանի Սարատովկա գյուղի
Ն. Ս. Խրուշչովի անվան կոլտնտեսության նախագահ

## ՍՍՌՄ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ Հնգամյակ

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԾԻԾԵՌՆԱԿՆԵՐԸ ԴԱՈՒԳԱՎԱՅԻ ԱՓԵՐԻՆ

Ի. ՎԻՏՈՂ (Ռիգա)

Այնտեղ, Դաուգավայի ափերից հեռու, մեր Հայրենիքի սրտում՝ Մոսկվայում, բորբոքվեց այդ սքանչելի շարժումը։ Այն իր մեջ է մարմնացնում բոլոր լավագույնը, ինչ մշակված է սոցիալիստական մրցության բազմամյա պրակտիկայով։ Այդ շարժումը աշխատանքի հանդեպ մարդկանց ներարկում է կոմունիստական վերաբերմունք, նպաստում է կենցաղում արմատավորելու կոմունիստական բարոյականությունը, խթանում է անցյալի վերապրուկներից զերծ նոր մարդու ձևավորմանը։ Եվ, վերջապես, մեր կյանքի ընդերքից ծնված այդ շարժումն է, որը գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորմամբ խթանում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և այդ աշխատանքի բովում նոր մարդու կերպարի կատարելագործմանը։ Մի ամբողջության մեջ միացնելով աշխատանքը, ուսումն ու կենցաղը, այդ շարժումը ներգործուն ազդեցություն է ունենում մարդկանց կյանքի և գործունեության բոլոր կողմերի վրա։

Մոսկվա-Սարտիրովոչնայա դեպոյում սկիզբ առավ մեր դարաշրջանի կենսաբեր ու նոր շարժումը՝ կոմունիստական աշխատանքի բրիգադաների և հարվածայինների մրցությունը, որոնց հիմնական նշանաբանն է՝ սովորել, աշխատել և ապրել կոմունիստաբար։ Այդ շարժումը խարսխված է մեծ Լենինի, կոմունիստական աշխատանքի՝ «ամենքը մեկի և մեկը ամենքի համար» սկզբունքի վրա։

Մոսկվա-Սարտիրովոչնայա դեպոյի առաջավորների նախաձեռնությունը ջերմ արձագանք գտավ մեր Հայրենիքի բոլոր քաղաքներում ու գյուղերում։ Ձեռնարկություններում և նորակառույցներում, սովխոզներում և կոլտնտեսություններում գնալով ավելի է ծավալվում կոմունիստական աշխատանքի ու կենցաղի համար բռնկված շարժումը։ Կոմունիզմի այդ սքանչելի ծիծեռնակները, նոր կյանքի այդ համբավաբերները սուրացին մեր անծայրածիր Հայրենիքով մեկ։

Նրանք եկան, հարկավ և Լատվիա, իրենց բույնը հյուսեցին և մեզ մոտ մեկընդմիշտ բնակություն հաստատեցին։ Եվ դա կատարվեց սրանից ավելի քան երկու տարի առաջ, երբ սովետական ժողովուրդը գոհունակության զգա-



ցումով ուսումնասիրում էր Ն. Ս. Խրուշչովի՝ պարտիայի XXI համագումարին տրվելիք զեկուցման թեզիսները։

1958 թվականի նոյեմբերյան պաղ օրերից մեկն էր, երբ Ռիգայի նավանորոգման գործարանի մեխանիկական ցեխում տեղի ունեցավ բանվորների մարդաշատ ժողովը։ Այստեղ քննարկում էին ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումները։ Այդ իսկ հավաքում ձայն խնդրելով, կաթսայագործ Ցաղեպ Լուրինն ասաց.

— Ես հպարտ եմ, որ ինձ վիճակված է մեր երկրում կոմունիզմի կառուցման երջանկությունը վայելել։ Ես մտքով պատկերացնում եմ կոմունիզմի վաղվա օրը։ Դա, ընկերնե՛ր, հիրավի սքանչելի ապագա է։ Այդ ապագայի կառուցմանն էլ ցանկանում եմ նվիրաբերել իմ բոլոր ուժերը։ Իսկ դա նշանակում է սեփական աշխատանքի հանդեպ վերաբերվել կոմունիստական գիտակցականությամբ։ Ոչ միայն ե՛ս պետք է անձնվեր ու ազնիվ աշխատեմ, այլև այդ հատկությունները ներարկեմ իմ ընկերներին, որպեսզի նրանք ևս իրենց աշխատանքային պարտքը հատուցեն կոմունիստաբար։

Երեկ մենք թերթում կարդացինք Դոնբասի հանքագործների՝ Կուզմա Սեվերինովի բրիգադայի հայրենասիրական նախաձեռնության մասին։ Նրանք վճռել են կոմունիստական աշխատանքի բրիգադա կազմակերպել։ Նրանց վեհ նախաձեռնությունը խորապես հուզում է մեզ և ոգեկոչում դառնալու կոմունիստական աշխատանքի ու կյանքի կերտողներ։ Քննարկելով այդ հարցը, մենք՝ կաթսայագործներս, որոշեցինք այսօրվանից պայքարել կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման արժանանալու համար։ Դա մեզ շատ բան է պարտավորեցնում։ Մեր գլխավոր պատվիրանն է՝ բրիգադայի յուրաքանչյուր անդամ պետք է աշխատի, սովորի և ապրի կոմունիստաբար, ամենից առաջ հոգա հասարակության շահերի մասին։ Մեր բրիգադայի ամեն մի անդամի վրիպումների և թերացումների համար պատասխանատու է ամբողջ բրիգադան և հակառակը։

Ցաղեպ Լուրինը, մարդկանց ծանոթացնելով հանձն առած կոմունիստական պարտավորություններին, մրցման հրավիրեց Նիկոլայ Սերգեևի կոմերիտական-երիտասարդական բրիգադային։ Կաթսայագործների հրավերը ջերմորեն ընդունվեց։ Կոմունիստական աշխատանքի մրցման մեջ մտան և վարպետ Անդրիս Թաունինշի հերթափոխության բանվորները։ Արտադրության առաջավորների այդ նախաձեռնությանը հարեց գործարանի ողջ կոլեկտիվը։ Բանվորների ընդհանուր ժողովը մի կոչով դիմեց Լատվիայի աշխատավորներին՝ կոմունիստական աշխատանքի շարժման ծավալման համար։

Հաջորդ օրը նավանորոգման գործարանի բանվորների այդ կոչը քննության առնվեց ռեսպուբլիկայի բազմաթիվ ձեռնարկություններում։ Ընդմիջմանը հավաքվեցին և «Զասուլաուկա մանուֆակտուրա» կոմբինատի ջուլհակային ցեխի առաջավոր բրիգադաների բանվորները՝ քննարկելու այդ դիմումը։

— Կոմունիստական աշխատանքի բրիգադաների ստեղծումը լավ բան է,— ասաց վարպետի օգնական կոմունիստ Ալեքսանդր Մուրավյովը։— Մենք ապրում ենք կոմունիզմի շեմին և աշխատանքն էլ պետք է լինի կոմունիստական։ Քանի որ այդ կոչումը մեզնից մեծ ջանքեր է պահանջում, մենք չպետք է ոչինչ խնայենք այդ նպատակի համար։ Դե՛հ, աղջիկներ, մենք ևս հետևենք նավանորոգողների օրինակին, ստեղծենք կոմունիստական աշխատանքի մեր բրիգադաները։

Գոհունակությամբ հավանություն տալով այդ առաջարկին, ջուլհակուհի-ները հանձն առան կոմունիստական բրիգադային վայել բարձր պարտավորու-թյուններ և մրցման հրավիրեցին «Սարկանա տեքստիլնիեց» կոմբինատի ջուլ-հակուհիներին։ Վարպետի օգնական Նիկոլայ Կոզլովի գլխավորած ջուլհակու-հիների բրիգադան, արձագանքելով այդ կոչին, իր հերթին մրցման հրավիրեց «Բոլշևիչկա» կոմբինատի ջուլհակուհիներին։

Այսպիսով, գնալով ռեսպուբլիկայում նորանոր կոլեկտիվներ ընդգրկվեցին կոմունիստական, նոր կյանքի կառուցման այդ հիանալի շարժման մեջ։ Եվ ահա մենք տեսնում ենք ինչպես Ռիգայի ՎԷՑ-ի, վագոնակառուցման, ՌԷԶ, «Ռիգասելմաշ»-ի, «Ավտոէլեկտրապրիբորի» գործարանների, «Ավրորա»-ի ֆաբրիկայի և այլ խոշոր ձեռնարկությունների կոլեկտիվները մրցման մեջ են մտել այդ բարձր կոչմանն արժանանալու համար։ Ռիգայի դրական օրինակին են հետևում Դաուգավպիլսի, Լիեպայայի, Ռեզեկնեի, Ելգավայի աշխատա-վորները։

Ուրախալի է տեսնել, որ բանվոր դասակարգի ընձեռած այդ վեհ շարժ-ման մեջ են մտնում և Լատվիայի գյուղատնտեսության առաջավորները։

— Իսկ մենք, կոլտնտեսականներս, մի՞թե կարող ենք հայրենասիրական այդ շարժմանը չմասնակցել ակտիվորեն։ Իհարկե, ոչ,— ասաց Վենտսպիլս-յան շրջանի Լենինի անվան կոլտնտեսության կթվորուհի Միրձա Կարկլինիան։ — Կոմունիստական մրցման մեջ մտնելով, ես պարտավորվում եմ յուրաքան-չյուր կովից կթել հինգ հազար կիլոգրամ կաթ, մշակել մեր ֆերմայի մերձակա մեկուկես հեկտար հողամասը և դրանից կերաբույսի լավ բերք ստանալ, իջեց-նել կաթի ինքնարժեքը, և որ գլխավորն է՝ օգնել մյուս կթվորուհիներին լավ արդյունքների հասնելու։ Կոլտնտեսության շահերը մենք պետք է մեր անձնա-կանից բարձր դասենք։ Եթե ուրախանում ենք մեր ընդհանուր գործի հաջողու-թյամբ, ապա պետք է ցավենք մեզնից որևէ մեկի անհաջողական վշտով։ Մեր ուժը մեր ընկերական միության մեջ է։ Ես ձեզ հրավիրում եմ մեկընդմիշտ նվիրվելու այդ միությանը, որով և կդառնանք մեր մեծ գործի արժանի աշ-խատավորուհիները։

Եվ ահա վճռում են կոմունիստաբար աշխատել «Զիմտենե» կոլտնտեսու-թյան կթվորուհիները, Մալթյան շրջանի Խրուշչովի անվան կոլտնտեսության և Ռունեյան շրջանի «Ստրաումե» կոլտնտեսության մեխանիզատորները և գյուղի բազմաթիվ այլ աշխատավորներ։ Լատվիական գյուղում ևս օր-ավուր ծավալ-վում է և կատարելագործվում կոմունիզմ կառուցողների մեծանշանակ շար-ժումը։

***

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործը վիթխարի մասշտաբի խնդիր է, որի լուծման համար վճռական նշանակություն ունի յոթնամյա պլանը։ Յոթնամյակի ընթացքում մեզ անհրաժեշտ է գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումներով հագեցնել ժողովրդական տնտեսու-թյան բոլոր ճյուղերը, ավելի բարձրացնել աշխատանքի արտադրողականու-թյունը և աշխատավորների բարօրությունը։ Պատմական այս մեծ խնդիրների արագ լուծմանն է նպաստում կոմունիստական աշխատանքի արմատավորման համար ծայր առած այդ փառավոր շարժումը։ Կոմունիստական հասարակու-



թյան կառուցման տենչով տարված այդ շարժման մասնակիցները խոսք են տվել այսօր աշխատել ավելի լավ, քան երեկ, իսկ վաղն ավելի լավ քան այս-օր։ Նրանք փշրում են աշխատանքի հին մեթոդները, նոր ուղիներ գտնում աշ-խատանքի արտադրողականության բարձրացման համար, կատարելագործում են իրենց գիտելիքները որպես նոր կյանքի լիիրավ տերեր։ Նրանք այրվում են կոմունիզմը մեր կյանքի մեջ մուծելու վսեմ ցանկությամբ, որի համար և չեն խնայում իրենց ստեղծագործ ջանքերը։

Ինչպես ողջ ՍՍՌՄ-ում, այնպես և Սովետական Լատվիայում կոմունիս-տական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարող հազարավոր աշ-խատավորներ զարմանալի արագությամբ կյանքն առաջ մղելու նորանոր ձևեր են հայտնագործում և կիրառում։

Այսպես, օրինակ, Ռիգայի «Կոմպրեսոր» գործարանի խառատ Ալֆրեդ Կլյավան, որը վճռել է յոթնամյա պլանը կատարել չորս և կես տարում, այդ պարտավորության իրագործման նպատակով մշակել է ամեն ամսում կատա-րելիք աշխատանքի կոնկրետ պլան։ Այս կարևոր նախաձեռնությունը լայնորեն կիրառվեց ո՛չ միայն ռեսպուբլիկայում, այլև նրա սահմաններից դուրս։ Միայն Լատվիայի մեքենաշինական գործարաններում խառատ Կլյավային հե-տևեցին 3 500 բանվորներ։ Ռեսպուբլիկայում նա առաջինն արժանացավ կո-մունիստական աշխատանքի հարվածայինի բարձր կոչմանը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ նստաշրջանում Ն. Ս. Խրուշչովն ասաց. որքան կոմունիզմին մոտենանք, մեզ մոտ աշխատավորական ավելի լայն զանգվածներ հանդես կբերեն իրոք կոմունիստական վերաբերմունք աշխա-տանքի նկատմամբ։ Այս միտքը հաստատող շատ ու շատ օրինակներ կարելի է բերել։ Ահա թեկուզ մեկը Լատվիայի բուռն զարգացող իրականությունից։ Շատ վաղուց չէ, ինչ Ռիգայի «Ավրորա» գուլպայի ֆաբրիկայի կոռոնագոր-ծուհիները դիմեցին իրենց ցեխի պետին հետևյալ խոսքերով.

«Յոթժամյա աշխատանքի անցնելու կապակցությամբ, մենք, 71-րդ մեքենայի կոռնագործուհիներս, Լ. Ռուխման, Լ. Կոլկով-սկայա և Ա. Կոսիլովա, որոշել ենք ստեղծել մի բրիգադա համա-տեղ արտադրանքով: Խնդրում ենք մեր արտադրանքը ինչպես ըստ քանակի, այնպես և ըստ որակի բաժանել երեքիս վրա:

Մենք համոզված ենք, որ աշխատանքի այս մեթոդը կբարձ-րացնի աշխատանքի արտադրողականությունը և թողարկվող ար-տադրանքի որակը: Մենք կաշխատենք բարեխիղճ և ազնվաբար:

Ռուխման, Կոսիլովա, Կոլկովսկայա»:

Կոռոնագործուհիների այս դիմումը հուզեց ցեխի բոլոր բանվորուհի-ներին։ Չէ՞ որ մինչև օրս ոչ ոք այդպես չի աշխատել։ Բոլորն էլ սովորել են գործարքային վճարին՝ ով որքան արտադրել է, այդքան էլ ստանում է ինքը անհատորեն։ Եվ հանկարծ Լիդիա Ռուխմանը, Ալեքսանդրա Կոսիլովան և Լյու-բով Կոլկովսկայան վճռել են վաստակը բաշխել հավասար։

— Սակայն մի՞թե ցավալի չէ, երբ ինքդ աշխատում ես ուժերդ մինչև վերջ լարած, իսկ քեզ փոխարինողը, դանդաղորեն է աշխատում, որի հետե-վանքով և քո վաստակի մի մասը նա կստանա,— ասում էին մի քանի կոռո-նագործուհիներ։

Հարկավ, ոչ ոք էլ շահագրգռված չի զրկվելու իր վաստակից։ Բայց այդ երեք կանայք, մի կողմ վանելով բոլոր տարակուսանքները, սկսեցին նոր ձևով աշխատել։

Իսկ ինչո՞ւ նրանք այդպես վարվեցին։ Թափանցեք հարցի էության մեջ և դուք կհամոզվեք, որ այդ աշխատավորուհիները, հիրավի, կոմունիստական վերաբերմունք են ցուցաբերել աշխատանքի նկատմամբ։

Կոմունիստորեն գործող այս կանանցից յուրաքանչյուրը սպասարկում է մեկ կոտոնային մեքենայի, որի վրա միաժամանակ հյուսվում է 20 կամ 24 գուլպա, նայած մեքենայի չափին։ Գուլպաների այդ քանակության արտադրանքի վրա միջին հաշվով ծախսվում է մեկ ժամվա աշխատանք։ Հետո կոտոնուհին կանգնեցնում է մեքենան, հանում է պատրաստի արտադրանքը և կրկին բեռնում այն՝ գուլպաների հերթական կապոցի հյուսման համար։ Արտադրանքի մեջ հաշվի են առնվում միայն պատրաստի այն գուլպաները, որոնք հանված են մեքենայից։ Այդ նպատակով էլ ջուլհակուհիները ջանում են հերթափոխության վերջին մեքենայում չթողնել թերհյուս գուլպաներ՝ աշխատանքն ավարտում են ժամանակից վաղ կամ թե շատ շտապելով լրահյուսում են սկսված գուլպան։ Թե՛ մեկը և թե մյուսը վատ են։ Իջնում է աշխատանքի արտադրողականությունը, ամեն հերթափոխին մեքենաները կանգնում են 15—20 րոպե, մերթ ավելի շատ, իջնում է արտադրանքի որակը այն պատճառով, որ կոտոնուհին շտապում է վերջացնել հերթափոխը։ Պատահում է, որ երբեմն մասրան լինում է ոչ ամուր թելով, որը մեքենայում կտրտվում է։ Եթե դա կատարվում է հերթափոխության վերջում, ջուլհակուհին սովորաբար մասրան չի փոխում, այլ հանձնում է հերթափոխուհուն։ Յուրաքանչյուրը հոգում էր միայն իր մասին, մինչև խոտանը չէր կանխվում։

Այս պայմաններում էր, որ Լ. Ռուխմանը, Ա. Կոսիլովան և Լ. Կոլկովսկայան սկսեցին աշխատել նոր եղանակով։ Ահա հերթը վերջացնում է Ալեքսանդրա Կոսիլովան։ Մեքենայում կան 20 հատ կիսահյուս գուլպաներ։ Չկանգնեցնելով մեքենան նա այդ հանձնում է Լ. Կոլկովսկայային։ Ալեքսանդրան հոգում է նաև մասրաները փոխելու մասին, որպեսզի Լյուբայի մոտ կտրվածքներ չլինեն։ Չէ՞ որ դա հիմա նրանց ընդհանուր գործն է, և յուրաքանչյուրի աշխատանքից է կախված երեքի հաջողությունը։ Դրա համար էլ յուրաքանչյուր կոտոնուհի ձգտում է լավ աշխատել, շատ արտադրել. այս դեպքում է, որ բացառվում է ուրիշի հաշվին «ապրելու» մտադրությունը։

Որպիսի՜ սքանչելի արդյունք նման կոլեկտիվ աշխատանքից։ Այն, ինչ աշխատավորներն առաջ կատարում էին 8 ժամում, այժմ անում են 7 ժամում։ Գուլպաների որակն էլ բարելավվել է։ Այժմ արդեն բոլոր կոտոնագործուհիներն աշխատում են նոր եղանակով, այդպես են վարվում և վարպետների օգնականները։ Դա նշանակում է, որ մեր կանայք այժմ կտան ավելի շատ կապրոնահյուս գուլպաներ, քան երբևէ։

Միանգամայն նոր և արժեքավոր նախաձեռնությամբ հանդես եկավ շինարար-մոնտաժնիկների կոմունիստական աշխատանքի այն բրիգադան, որը գլխավորում է Դայնիս Կրուտայնիսը։ Այս աչքի ընկնող կոլեկտիվը դիմեց ռեսպուբլիկայի երիտասարդ շինարարներին, կոչ անելով ակտիվորեն մասնակցելու այն պայքարին, որը մղվում է՝ ժամանակին շահագործման հանձնելու բնակարանները և արդյունաբերական օբյեկտները, գերազանց որակով կատարելու շինարարական բոլոր աշխատանքները։



Իսկ ո՞րն է նորը Դ. Կրուտայնիսի բրիգադայում։ Ինչպե՞ս է նա այժմ աշխատում։ Երբ նրա բրիգադան ձեռնարկեց խոշոր պանելներից կառուցվող տան հավաքմանը, հանդիպեց բավականին շատ կազմակերպական դժվարությունների։ Չէ՞ որ այդ ուղղությամբ դեռևս ոչ մի փորձ չկար։

Առաջին երեք տների մոնտաժման ընթացքում պանելներն ու մյուս կոնստրուկցիաները շինարարության հրապարակ էին բերվում մինչև հավաքի սկիզբը և կասետներով դարսվում էին շինհրապարակում, որը շատ ժամանակ և ջանքեր էր խլում։ Հետագայում շինարարները հաշվի առան այդ թերությունը և մշակեցին ժամային գրաֆիկ, տներն սկսեցին հավաքել պարզապես մեքենայի վրայից։ Հիմա արդեն պանելները վաղօրոք չեն բերվում շինհրապարակ, այլ հատուկ սարքավորման վրա դրանք գործարանից հավաքավայր են բերվում։ Այստեղի շինարարները հենց անիվների վրա հավաքում են դրանք։ Տների հավաքումը կատարվում է տեխնոլոգիական գծագրով, որում նշված են աշխատանքների կարգը, ինչպես և պլատֆորմների ժամանման և առաքման ընթացքը։

Այս նոր եղանակը հիանալի արդյունքներ տվեց։ Առաջ ութ բանվորներ երկհերթ աշխատելով 80 բնակարանանոց տունը հավաքում էին 45 օրում, իսկ նոր մեթոդը կիրառելիս՝ 35 օրում։ Կառուցման աշխատանքները մոտավորապես 1200 ռուբլով էժան են։ Այդ բրիգադան հիմա 65 բնակարանանոց տունը հավաքում է ընդամենը 25 օրում։ Բայց մեր առաջավոր շինարարները վճռել են հինգ օրով ևս կրճատել այդ տևողությունը։

«Ջաունլաուկա մանուֆակտուրա» տեքստիլ կոմբինատում վարպետի հերթափոխ օգնականներ Սիտկինը, Կարպովը և Սավելյովը հանդես եկան ջուլհակային սարքավորման միջնորոգման ժամկետը 4-ից մինչև վեց ամիս երկարացնելու առաջարկով։ Նրանց առաջարկով երկու միջին նորոգումները պետք է կատարվեն նորոգման-մեխանիկական ցեխի ուժերով, իսկ երրորդ նորոգումը իրենց՝ վարպետի օգնականների ուժերով և առանց հաստոցները կանգնեցնելու։ Այս խիստ արդյունավետ մեթոդը լայնորեն ծավալվել է Լատվիայի տեքստիլ արդյունաբերության բոլոր ձեռնարկություններում։

Բնորոշն այն է, որ աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունք ցուցաբերողների ծավալվող շարժումը չի ներփակվում միայն իրենց բրիգադայի և տեղամասի սահմաններում։ Նրանք բառիս բուն իմաստով միշտ որոնում են նորն ու առաջավորը, ինչ նպաստում է աշխատանքի առավել արդյունավետությանը և հաճույքով են կիրառում իրենց մոտ այդ նոր եղանակը, նախապես հարմարեցնելով այն իրենց արտադրության առանձնահատկություններին։ Նոր կյանքի այդ պիոներներն իրենց նվաճումների մասին սիրով պատմում են ամենքին, հաղորդում և սովորեցնում ուրիշներին և այդպիսով հենց խթանում ժողովրդական տնտեսության վերելքը։ Ահա թե ինչու բնական է, որ այսօր մեր ռեսպուբլիկայի գրեթե բոլոր մեքենաշինական գործարաններում լայնորեն արմատավորվում է լենինգրադյան ձեռնարկությունների՝ դետալը խմբավորմամբ մշակելու մեթոդը։ Փոխադարձ օգնության նման օրինակներ շատ կարելի է բերել կոմունիզմի այդ առաջընթացների պրակտիկայից։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաների գործունեության բնորոշ կողմերից մեկն էլ այն է, որ նրանք անմիջականորեն և պատշաճ կրքոտությամբ մասնակցում են ընդհանուր արտադրության կատարելագործմանը, տեխնիկական պրոգրեսի արագացմանը։ Այդ բանին նրանք հասնում են նորի

մշտական որոնումով, աշխատանքի նոր մեթոդներ հնարելով, արտադրության
մեքենայացմամբ և ավտոմատացմամբ, գյուտարարությամբ և ռացիոնալի-
զացիայով։

Ո՞վ չի տեսնում, որ նորարարության, նոր մեքենաների և մեխանիզմների
ստեղծման, տեխնոլոգիական կատարյալ պրոցեսների կիրառման իրենց ձգտ-
ումներով սովետական բանվորները հսկայական չափով աճել են կուլտու-
րական-տեխնիկական իմաստով, որոնք ի վիճակի են դնելու և լուծելու տեխ-
նիկական ամենաբարդ խնդիրները։ Ահա ձեզ մի ուշագրավ և ուսանելի օրի-
նակ։

ՎԷՖ գործարանում աշխատում է համեստ փականագործ-նորարար Վոլ-
դեմար Բուշը։ Նա ինքը հորինել է ավելի քան 30 ավտոմատներ։ Ահա թե-
կուզ նրա ստեղծած պրիբոր-ավտոմատներից մեկը, որի օգնությամբ լվացվում
են հեռախոսային կայանի կոնտակտային զսպանակները։ Այդպիսի զսպա-
նակների պատրաստման արտադրողականությունը բարձրացել է հիսուն ան-
գամ։ Նրա բոլոր գյուտերը թե՛ հեշտացնում են բանվորի աշխատանքը, թե՛
ավելացնում զանազան դետալների թողարկումը։ Արտադրական բարձր նվա-
ճումների համար Վ. Բուշին շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի
կոչում։ Եվ մեծ ուշիմություն պետք չէ, որպեսզի մեր շրջապատում նկատենք
Բուշի հետևորդներին։

Այսպես, օրինակ, հինգերորդ կահույքային կոմբինատի լավագույն ռա-
ցիոնալիզատորներից մեկն է Յաղեպ Շմաուկստելիսը։ Անցյալ տարի նա ա-
ռաջարկեց և ներդրեց 13 ռացիոնալիզատորական առաջարկություններ։ Որո-
նող մտքի տեր այս մարդը մի գլխավոր հոգս ունի՝ ինչպես անի, որ բարձ-
րացնի հաստոցների արտադրողականությունը և արտադրանքի որակը։ Նրա
վերջին առաջարկներից մեկի կիրառմամբ (կահույքի ճարմանդի պատրաստ-
ման ավտոմատ) ձեռնարկությունը 1300 ռուբլու տարեկան խնայողություն
ստացավ։

Արտադրության մեջ շատ նոր բաներ մուծեցին ակտիվ ռացիոնալիզա-
տորներ՝ Ա. Բաուերը «Սարկանայս մետալուրգս» գործարանից, Ի. Ջակիսը՝
վագոնաշինության գործարանից, Ի. Յաունբրուիսը՝ Լիեպայայի ձկնապահա-
ծոների կոմբինատից և մյուսները։ Այժմ ռեսպուբլիկայի արդյունաբերական
ձեռնարկությունների նորարարների թիվը հասնում է 30 հազար մարդու։
Ստեղծագործ մտքի այս մարդիկ ընթանում են տեխնիկական առաջընթացն
արագացնողների ավանգարդում։

Նորարարների թիվը բավականին մեծ է և Սովետական Լատվիայի գյու-
ղատնտեսության ասպարեզում։ Մեր ռեսպուբլիկայի պատմության մեջ կգրը-
վեն Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ Անտոն Բարտուլիսի և Ֆելիցիա
Ջուպլինսկայայի անունները։ Նրանց հայրենասիրական օրինակին հետևեցին
ո՛չ միայն Լատվիայի անասնաբույծները, այլև Միության մյուս մարզերի,
երկրամասերի և ռեսպուբլիկաների կոլտնտեսականները։ Անցյալ տարվա
դեկտեմբերի վերջին Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ Կենտկոմի անունից ջերմագին ող-
ջունեց անվանի խոզապահին և «Կատեննիեկի» սովխոզի կոլեկտիվին՝ սոցիա-
լիստական պարտավորությունների կատարման համար և ցանկացավ նրանց
նոր հաջողություններ 1961 թվականի պարտավորությունների կատարման աս-
պարեզում։

Տարվա սկզբին Ա. Բարտուլիսը պետությանը հանձնեց չորս հազարից ա-



վելի խոզ և որոշել է այս տարի բտել հինգ հազար խոզ։ Այս լուրջ պարտա-
վորության կատարման համար սովխոզը, հարկավ, ունի անհրաժեշտ պայ-
մաններ. ընդարձակված է խոզանոցը, շինված են վակուումային ինքնամատու-
ներ, աղբի հավաքման տրանսպորտյոր և այլն։

Իր խոստումը կատարեց և Ֆ. Ջուպլինսկայան։ Անցյալ տարի իր խնամած
140 կովերից նա ստացավ ավելի քան 350 տոննա կաթ։ Սա երկաթուղային մի
ամբողջ կազմ է 20 ցիստեռնից բաղկացած։ Այս խելոք և աչնիվ աշխատա-
վորուհուն են հետևում ռեսպուբլիկայի շատ կթվորուհիներ։ Դրանց թվում են՝
Վ. Պլուչը, Ռ. Տրուսկովսկայան՝ «Ստարս» սովխոզից, կթվորուհիներ Մաչտե-
նեն, Իկշեն և Ջույմաչը՝ «Պիլտենե» կոլտնտեսությունից (Վենտսպիլսյան շրջա-
նից) և մյուսները։

Արմատական փոփոխություններ մուծելով գյուղատնտեսական արտա-
դրության պրոցեսում, այդ առաջավորները ցույց են տալիս այն պրակտիկ
ուղին, որով ընթանալու է գյուղի և քաղաքի տարբերությունների վերացումը։

Սովետական բանվորն ու գյուղացին աշխատանքը համարում են ոչ թե
ծանր անհրաժեշտություն, այլ ստեղծագործման և ոգևորության աղբյուր։
Նրանք անընդհատ ուղիներ են որոնում, թե ինչպես ավելացնեն իրենց լուման
ընդհանուր գործում, իրենք հանդիսանալով փորձարկողներ, ռացիոնալիզա-
տորներ, գյուտարարներ։ Նրանց զարգացող աշխատանքն արդեն պահանջում է
լայն մտահորիզոն և խոր ու կայուն գիտելիքներ։ Նրանք միլիոններով սկսել
են գիտակցել, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջ-
նագույն պայմանը՝ գիտությանը տիրապետելն է։ Առանց գիտության առաջ-
խաղացում չկա։

Ահա թե ինչու ռեսպուբլիկայի հարվածայինների ու կոմունիստական աշ-
խատանքի բրիգադաների պարտավորություններում առաջնակարգ տեղ է հատ-
կացված մարդկանց որակավորման բարձրացման, վարպետության կատարե-
լագործման, երկրորդ և հարակից մասնագիտությունների տիրապետման հար-
ցերին։ Բազմակողմանի ուսուցումը միայն կապահովի աշխատանքի արտա-
դրողականության անընդհատ վերելքը և արտադրանքի բարձր որակը, ժամա-
նակակից բարդ տեխնիկայի տիրապետումը, տեխնոլոգիայի կատարելագոր-
ծումը։

Իրենց աշխատանքում և կյանքում (և սա խիստ նշանակալի է), կոմունիս-
տական աշխատանքի բրիգադաները հետևողական կիրառում են կոլեկտիվիզ-
մի սկզբունքը, բարեկամության և փոխադարձ օգնության կանոնը։ Այդ սկըզ-
բունքները միավորում և զոդում են մարդկանց, ամրապնդում նրանց հավատը
սեփական կարողության նկատմամբ, սատարում են էգոիզմի գծերի հաղթա-
հարմանը, զոռոզության, եսասիրության արմատահանմանը, երիտասարդներին
դաստիարակում են համեստության, մարդկանց հարգելու ոգով։ Կոմունիստա-
կան աշխատանքի հարվածայինը՝ դա բարոյական նոր կերպարի մարմնացումն
է, որի համար իր ժողովրդի և կոլեկտիվի շահերը բարձր են անձնականից։

Ռեսպուբլիկայում վաղուց արդեն աչքի է զարնում այն ուրախալի երևույ-
թը, որ կոմունիստական աշխատանքի բրիգադաների կյանքում փոխադարձ
օգնությունն ու անձնազոհությունը, զգայուն և ուշադիր վերաբերմունքը մար-
դու հանդեպ՝ առօրյական է դարձել։ Բերենք մեր միտքը հաստատող լոկ մի
օրինակ։

Մի ժամանակ Լենա Բարանովան աշխատում էր «Լատվէներգո»-ի էլեկ-

տրափականագործների բրիգադայում։ Եվ ահա ընտանիքին մեծ դժբախտություն պատահեց՝ հանկարծակի սրտի պայթյունից մահացավ Լենայի ամուսինը։ Նա մեռավ այն պահին, երբ Լենան կերակրում էր երեք ամսական տղային։ Նրան թվաց, որ ինքը ողջ աշխարհում մնաց մենակ իր մանկիկի հետ։ Սակայն աշխատանքային ընկերները թեթևացրին նրա վիշտը։ Ո՛չ միայն նյութապես օգնեցին նրան, այլև հաճախ էին այցելում Լենային, սփոփում նրան։ Նրանք օգնեցին Լենային փոքրիկին տեղավորելու մսուրում։ Բայց ինչպե՞ս։

Լենան չէր կարող աշխատանքը վերսկսել, որովհետև փոքրիկին խնամող չկար։ Մի մսուրում մերժեցին, իսկ մյուսն էլ, որտեղ խոստացան ընդունել, նորոգվում էր։ Մի անգամ, մանկան հետ զբոսնելիս, Լենան արցունքի միջից,— չէ՞ որ սիրած ամուսնու կորստյան վերքը դեռ չէր ամոքվել,—նկատեց, որ այն շենքի ճակատը, որտեղ նա քանիցս եղել էր, վերափոխվել է։ Դռանը փակցված է տախտակը՝ «Առաջին մսուր»։ Լենան չհամբերեց և մտավ վերանորոգված շենքը։

— Նորոգումը վերջացե՞լ է,— հարցրեց նա վարիչին։— Այժմ կարելի՞ է մանկանը բերել։

— Սա, ինչ որ տեսնում եք, արդյունք է «Լատվէներգո»-ի Իվանովի բրիգադայի օգնության,— ժպտալով ասաց վարիչը։— Երեկոները եկան աշխատեցին, որպեսզի շուտ բացենք մսուրը։ Եվ այդ նրա համար, որպեսզի շուտով ընդունենք մի պստիկի՝ Սերյոժա Բարանովին։ Դժբախտություն է պատահել այդ ընտանիքին...

Լենայի ընկերները, բրիգադավար Իվանովի գլխավորությամբ, երկու շաբաթից ավելի երեկոներն աշխատելով՝ հիանալի նորոգեցին մսուրը։

Սրտացավություն, ընկերասիրություն՝ այս հատկություններն են բնորոշում այդ կոլեկտիվի բոլոր անդամներին, մի կոլեկտիվ, որն իրավամբ կարելի է կոչել կոմունիստական։ Այստեղ ոչ ոք, եթե անհրաժեշտ է, ժամանակը չի խնայում մեկ ուրիշի, ընդհանուր գործի համար։ Այդպես նրանք մեկնեցին (կիրակի օրը) կոլտնտեսություն բերքահավաքի, սակայն ոչ թե գործարանի կազմակերպությունների թելադրանքով, այլ միայն իրենց նախաձեռնությամբ։ Իսկ երբ կոլեկտիվ նվերներ բերեցին նորապսակներին (վերջին տարում չորս հարսանիք են արել), ապա տարեց փականագործ Ստաշուլանսը հեծանիվով տակնուվրա արեց գրեթե ողջ Ռիգան, որպեսզի փեսայի համար գնի ամենավերջին մարկայի փոշեծծիչ, կամ Լենա Բարանովայի մանկան համար ձեռք բերի գեղեցիկ մանկասայլակ՝ զսպաններով և պահեստի սահանքներով (ձմռան համար)։

Ահա այսպիսի վարքով և հոգացողությամբ են իրենց օրն անցկացնում մեր երկրի շատ հասարակ մարդիկ, որոնք աշխատանքում, կենցաղում և անձնական կյանքում ցուցաբերում են բարոյական բարձր հատկություններ և մարդու հոգին ավելի ազնվացնող իմաստալի զոհողություններ։ Մեր հասարակական կյանքի ընթացքն արագացնող նման վսեմ հոգու տեր մարդիկ Սովետական Լատվիայում օրավուր բազմանում են ու աճում։

Ապագա մարդու, կոմունիստական հասարակության վառ գծերը մենք տեսնում ենք ռեսպուբլիկայի երևելի մարդկանց՝ մեր օրերի հերոսների առօրյայում։ Ահա ձեզ Սոցիալիստական Աշխատանքի կրկնակի Հերոս, «Կապդարբիրս» կոլտնտեսության կթվորուհի Մարթե Սեմուլեն, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, նավաշինական գործարանի փականագործների բրիգադավար Լուրինը, ՎԷՖ-ի մոնտաժուհի Սիլինան, «Սարկանաիս կվադրատս» գործարանի բրիգադավար Բարանովան, «Սարկանաս մետալուրգս» գործարանի ֆրեզերագործուհի Ջագատան, հղկման աշխատանքների վարպետ Կոնրադեն, «Ռիգաս ասդումս» կոմբինատի ջուլհակուհի Դավիդսը։ Այս մարդկանց ողջ ռեսպուբլիկան ճանաչում է իբրև ապագա՛ հասարակության պիոներներ, որոնց աշխատանքն ու կյանքը կոմունիզմի վեհ սկզբունքների խտացումն են։



Այսօր Լատվիայում կոմունիստական աշխատանքի հարվածայինների և կոլեկտիվների բարձր կոչմանն արժանանալու համար պայքարում են 90 հազար մարդ՝ հինգ հազար բրիգադներ և 12 հազար բանվորներ ու կոլտնտեսականներ։ Հազարից ավելի կոլեկտիվների և գրեթե երեք հազար առանձին բանվորների արդեն շնորհվել է այդ պատվավոր կոչումը։ Կարևորն այն է, որ վերջերս այդ մրցման մեջ են մտնում ձեռնարկությունների ամբողջական կոլեկտիվներ։ 19 գործարաններ ու ֆաբրիկաներ, 93 երկաթուղային կայարաններ են դրանք։ Հատկապես լավ արդյունքների է հասել Ելգավայի երկաթուղային կայարանը, որի կոլեկտիվը ռեսպուբլիկայում առաջինն արժանացավ կոմունիստական աշխատանքի բարձր կոչման։

Մենք բնավ չենք տարակուսում և հավատացած ենք, որ այս տարի մեր ռեսպուբլիկայում կբազմապատկվի կոմունիստաբար աշխատողների և կոմունիստաբար ապրողների բանակը։ Եվս մի քանի տարի, այդ պատվավոր կոչմանը կարժանանա և մեր հրաշալի Ռիգան՝ կոմունիստական աշխատանքի և կենցաղի Ռիգան։ Մի՞թե սա ևս ոգևորիչ և սքանչելի չէ։ Սա այսօր պատրանք է, իսկ վաղը՝ իրականություն։

Սովետական Լատվիայի աշխատավորներն ստեղծագործական նորանոր սխրանքներով կդիմավորեն պարտիայի XXII համագումարը։ Ժողովրդի ընդերքից ծնված կոմունիզմի կերտման բուռն շարժումը, գարնան հեղեղի պես սրընթաց և ալեծուփ, լափին է տալիս ու ծավալվում մեր հզոր Հայրենիքի անափ տարածություններում։ Այն մաքրում է իր ճանապարհից թոշնածն ու փտածը և առատորեն ոռոգում նորոգ կյանքի շնչով հևացող հունթի արտերը։ Եվ այն կհաղթանակի շուտով։

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԲՆԱԿԱՆ ԳԱԶԸ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Մ. ՄԱՐԴՈՅԱՆ

Սովետական Միությունում բնական գազի արտադրության սկիզբը կարելի է համարել 1942 թվականի վերջը և 1943 թվականը, երբ Հայրենական Մեծ պատերազմի օրերին կառուցվեցին առաջին գազամուղները՝ Ելշանսկ—Սարատով և Բուգուրուսլան—Կույբիշև, որոնք գազով ապահովեցին այդ քաղաքների արդյունաբերական ձեռնարկությունները։

Հետպատերազմյան տարիներին կառուցվեցին խոշորագույն գազամուղներ՝ Սարատով—Մոսկվա՝ 843 կմ. երկարությամբ, որի մեկ օրվա տարողությունը հասնում է ավելի քան 1,3 միլիոն խորանարդ մետրի, Դաշավա—Կիև և այլն։

Սարատովյան գազի մատուցումը Մոսկվային տարեկան տալիս է ավելի քան մեկ միլիոն խորանարդ մետր փայտի, 650 հազար տոննա մերձմոսկովյան քարածխի, մոտ 150 հազար տոննա նավթի և ավելի քան 100 հազար տոննա մազութի խնայողություն։

Մեկ տոննա բնական գազի արդյունահանումը 12 անգամ ավելի էժան է նստում, քան նույնքան ածխի արդյունահանումը։ Գազի փոխադրումը խողովակաշարքի միջոցով 8 անգամ ավելի էժան է, քան ածխի փոխադրումը երկաթգծով։ Գազամուղի կառուցման ծախսերը փոխհատուցվում են նրա շահագործման 3—4 տարվա ընթացքում։

ՍՄԿԿ XXI համագումարի որոշումներում նշված է, որ յոթնամյակում էական փոփոխություններ պետք է մտցվեն երկրի վառելիքային բալանսի ստրուկտուրայում, ինչպես նաև քիմիական արդյունաբերության հումքի բազայում, գլխավորապես ի հաշիվ նավթի ու բնական գազի արդյունահանման ավելացման ու վերամշակման։ Վառելիքային բալանսում նավթի ու բնական գազի տեսակարար կշիռը 31 տոկոսից հասնելու է 51 տոկոսի, իսկ ածխինը՝ հակառակը՝ պետք է նվազի և 60-ից հասնի 43 տոկոսի։ Նախատեսված է բնական գազի արդյունահանումն ու արտադրությունը ավելացնել 5 անգամ, 1965 թվականին այն հասցնելով մինչև 150 միլիարդ խորանարդ մետրի։

Մեծ չափերով նավթ ու բնական գազ արդյունահանելու համար նախատեսված է ներդնել 17,3 միլիարդ ռուբլի (գների նոր մասշտաբով)։ Մինչդեռ 26 տարվա ընթացքում (1932-ից մինչև 1958 թվականը) նավթի ու գազի արդյունահանման համար ներդրվել է ընդամենը 7,2 միլիարդ ռուբլի։

Իրագործելով ՍՄԿԿ Կենտկոմի 1958 թ. օգոստոսի 15-ի որոշումը «Գազի արդյունաբերության և ՍՍՌՄ քաղաքներին ու ձեռնարկություններին գազի մատակարարման հետագա զարգացման մասին»՝ գազի արդյունաբերության աշխատողները հասել են նշանակալից հաջողությունների։ Բնական գազի որոնումների ու համառ հետախուզական աշխատանքների շնորհիվ առ մեկը հունվարի 1960 թվականի գազի արդյունաբերական պաշարների ծավալը հասավ մոտավորապես 1,5 տրիլիոն խորանարդ մետրի։ Միայն 1959 թվականին Ուկրաինայի, Հյուսիսային Կովկասի, Միջին Ասիայի և Ուրալի շրջաններում հայտնաբերվեցին բնական գազի 18 խոշոր հանքավայրեր, որոնց ընդհանուր պաշարները նախնական հաշվումներով կազմում են ավելի քան 500 միլիարդ խորանարդ մետր։ Ավելորդ չի լինի նշել, որ հինգերորդ հնգամյակի վերջում գազի արդյունաբերական պաշարները ՍՍՌՄ-ում կազմում էին 491 միլիարդ խորանարդ մետր։

Քիչ հաջողությունների չենք հասել նաև բնական գազի արդյունահանման բնագավառում (արդյունահանման միջին աճը 1956 թվականից սկսած տարեկան կազմում է 40—50 տոկոս)։ 1959 թվականին ժողովրդական տնտեսությունը ստացել է 53 միլիարդ խորանարդ մետր բնական գազ։ Յոթնամյակի միայն առաջին տարում բնական գազի աճը կազմեց 23,2 միլիարդ խորանարդ մետր. այդ ավելի է, քան գազի արդյունահանման ընդհանուր ծավալը 1957 թվականին։

Տարեցտարի ավելի արագ տեմպերով է ընթանում գազամուղների շինարարությունը։ Դեռ 3—4 տարի առաջ 600—700 կմ. գազամուղի շինարարությունը համարվում էր մեծ գործ։ Մինչդեռ 1960 թվականին Միության «Գլավգազի» կողմից կառուցվել են 3700 կմ. մագիստրալային ուղիներ և 800 կմ. ճյուղավորում։ Նախատեսված է յոթնամյակի ընթացքում կառուցել և շահագործման հանձնել 26 հազար կմ. գազամուղի մագիստրալային ուղիներ. այդպիսով 1965 թվականին կունենանք մոտավորապես 40 հազար կմ. մագիստրալային ուղիներ, որոնք իրենց երկարությամբ ավելի են երկրի հասարակածի երկարությունից։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան կենսագործելով լենինյան ազգային քաղաքականությունը՝ ամեն կերպ նպաստում է միութենական ռեսպուբլիկաների տնտեսական ու կուլտուրական բազմակողմանի զարգացմանը։ Այդ քաղաքականության վառ արտահայտությունն է գազամուղների շինարարությունը միութենական ռեսպուբլիկաներում։ Ուկրաինական գազը Դաշավա—Մինսկ գազամուղով և Իվացևիչի—Վիլնյուս—Լենինգրադ ճյուղավորումով, հնարավորություն կստեղծի գազիֆիկացնելու Բելոռուսական, Լատվիական և Լիտվական ռեսպուբլիկաների արդյունաբերական կենտրոններն ու Լենինգրադը։ Ջարկակ—Բուխարա—Սամարկանդ Միջին Ասիական գազամուղը, Ալմա-Աթա—Կարագանդա—Ջեզկազգան ճյուղավորումով գազի հզոր հոսանքով միահյուսում է Ուզբեկստանի ու Ղազախստանի էկոնոմիկան։ Այդ գազամուղի շնորհիվ Ուզբեկստանը 1965 թվականին լիովին կդադարի տարեկան 4 միլիոն տոննա քարածուխ ներմուծելուց։ Գազով կսկսեն աշխատել Չիրչիկի քիմիական կոմբինատը, ինչպես նաև կկառուցվեն սինթետիկ մանրաթելի գործարան և այլ նոր ձեռնարկություններ։

Ղարադաղ—Թբիլիսի, Աղստաֆա—Երևան գազամուղը սերտորեն միահյուսում է Անդրկովկասյան եղբայրական ռեսպուբլիկաների տնտեսական կյանքը։ Անդրկովկասի գազիֆիկացումը հնարավորություն կստեղծի նավթի ու

բնական գազի հաշվին վերջնականապես լուծելու վառելանյութի հարցը։ Գազամուղը լրիվ շահագործման հանձնելուց հետո կկրճատվի տարեկան 3 միլիոն Դոնբասի քարածխի և 1,6 միլիոն տոննա սակավածծմբային մազութի ներմուծումը, որը կազմում է 3 միլիարդ տոննա-կմ. բեռնաշրջանառություն։ Պայմաններ կստեղծվեն նաև քիմիական արդյունաբերության առավել զարգացման համար։ Այս ամենի միջոցով Անդրկովկասում մեկ տոննա պայմանական վառելանյութի ինքնարժեքը կիջնի մոտավորապես 65 տոկոսով։

Կառուցված և շահագործման են հանձնված Սերպուխովո—Լենինգրադ, Շեբելինկա—Բելգորոդ—Կուրսկ, Բրյանսկ, Ստավրոպոլ—Գրոզնի և այլ գազամուղներ։ Իր ավարտին է հասնում երկրի խոշորագույն գազամուղի՝ Սարատով—Գորկի—Իվանովո—Յարոսլավլ—Չերեպովեցի շինարարությունը, որը հումքի և վառելանյութի հզոր բազա կհանդիսանա ո՛չ միայն այդ քաղաքների քիմիական արդյունաբերության, այլ նաև արդյունաբերական կենտրոնների՝ Չերժինսկու, Կստովոյի, Պենզայի, Սարանսկի և այլ վայրերի համար։

Ուրալի շրջանները վառելանյութի օգտագործման տեսակետից գրավում են առաջնակարգ տեղերից մեկը։ Տարեցտարի աճում է հեռավոր վայրերի քարածխի պահանջը։ Միայն վերջին 10 տարվա ընթացքում ածխի փոխադրումն ավելացել է 2 անգամ։

Ուրալի վառելանյութի պրոբլեմը լուծելու նպատակով որոշված է երկճյուղ, մեծ տարողությամբ գազամուղ կառուցել Գազլի—Մագնիտագորսկ, Գազլի—Չելյաբինսկ ուղղություններով, Բերեզովոյից (Տյումենսկի մարզ) գազ տանել Սվերդլովսկ։ Այդ միջոցառումները Ուրալի վառելանյութային բալանսում կավելացնեն գազի մասը։

Հետագայում նախատեսվում է Միության Եվրոպական մասում և Ուրալում ստեղծել գազամուղային միասնական սիստեմ, որը պայմաններ կստեղծի գազային սիստեմի առավել ռիթմիկ աշխատանքի, բնական գազի ռացիոնալ օգտագործման համար և կվերացնի գազի պահպանման նպատակով կառուցվող մի շարք շինարարությունների անհրաժեշտությունը։

Յոթնամյակի տարիներին նախատեսված է կառուցել ավելի քան 40 խոշորագույն ջերմաէլեկտրակայան՝ 600—1200 հազար կիլովատ հզորությամբ։ Այդ ջերմաէլեկտրակայանների մի մասի համար ջերմության աղբյուր կհանդիսանա արդյունահանվող բնական գազի մոտ 80 տոկոսը։

Բնական գազի շնորհիվ 10 ամսով կկրճատվի ջերմաէլեկտրակայանների շինարարության ժամկետը, այլևս հարկ չի լինի կազմակերպել վառելիքային տնտեսություն, կվերանան նաև վառելիքի փոխադրման ծախսերը։ Բավական է նշել, որ 600 հազար կիլովատ հզորություն ունեցող ջերմաէլեկտրակայանի համար օրական պահանջվում է 7 հազար տոննա ածուխ (5—6 գնացք)։ Եթե հաշվի առնենք նաև այն, որ կայաններում պետք է լինի վառելիքի պաշար, ապա պարզ կդառնա, թե որքան մեծ պետք է լինի պահեստային տնտեսությունը և որքան շատ բեռնաթափման ու մատուցման մեխանիզմներ պետք կլինեն։

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության համար գազն ունի ավելի խոշոր նշանակություն, քանի որ Հայաստանը զուրկ է տեղական վառելիքային պաշարներից և ստիպված է համարյա ամբողջ արդյունաբերությունը խարսխել Սևան—Հրազդան կասկադի վրա։

Այդ իսկ պատճառով գազի բերումը ռեսպուբլիկայի վառելանյութի պրոբլեմի լավագույն լուծումն է։ 1965 թվականին Հայաստանը կստանա 3250 հազար տոննա բնական գազ (վերահաշված պայմանական վառելանյութով), որը միաժամանակ հուսալի բազա կհանդիսանա քիմիական արդյունաբերության հետագա զարգացման համար։



Որպեսզի մեկընդմիշտ լուծվի Հայաստանի ժողովրդական տնտեսությունը էլեկտրաէներգիայով ապահովելու հարցը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՍՄԿՊ ԿԿ-ն որոշում ընդունեցին Երևան, Կիրովական և Հրազդան քաղաքներում կառուցել 3 ջերմաէլեկտրակայաններ, որոնք կօգտագործեն Հայաստան ներմուծվող բնական գազի մոտ 80 տոկոսը։ Ջերմաէլեկտրակայանների արտադրած էլեկտրաէներգիան, Ադրբեջանից ստացվող 510 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի հետ մեկտեղ, լիովին կբավարարի Հայաստանի արդյունաբերության էներգետիկ պահանջները և հնարավորություն կընձեռի 3 անգամ պակասեցնել Սևանի ջրերի բացթողումը։

Երևան և Կիրովական քաղաքներում սկսված են ջերմաէլեկտրակայանների շինարարության աշխատանքները։ Կիրովականի ջերմաէլեկտրակայանի շոգու միջոցով կգործարկվի նաև ացետատային մետաքսի գործարանը։

1960 թվականին Երևանի ստացած բնական գազը օգտագործվում էր որպես վառելանյութ տեխնոլոգիական շոգի ստանալու համար։ Կիրովի անվան գործարանը մասնակիորեն աշխատելով բնական գազով՝ օգտագործել է 78 միլիոն խորանարդ մետր գազ, որը համարժեք է մոտավորապես 96 հազար տոննա պայմանական վառելանյութի (քարածխի հաշվարկով)։ Գազի օգտագործումը 30 տոկոսով պակասեցրեց մեկ տոննա շոգու վրա ծախսվող էլեկտրաէներգիան և 10 տոկոսով բարձրացրեց շոգեկաթսայի արտադրողականությունը։

1961 թվականին արդյունաբերության և կոմունալ կենցաղային կարիքների համար կօգտագործվի 320 միլիոն խորանարդ մետր գազ։ Երևանում կգազիֆիկացվեն շատ գործարաններ, ֆաբրիկաներ, ինչպես նաև բաղնիքների, հիմնարկ-ձեռնարկությունների, բնակելի շենքերի ջեռուցման սիստեմները։ Գազ կստանան 19500 բնակարաններ, որոնցից 10000-ը՝ հեղուկ գազ։ Հեղուկ գազ կմատակարարվի Ղափանին, Գորիսին, Քաջարանին և այլ բնակավայրերի, որոնք հեռու են գտնվում գազամուղի գլխավոր գծից։

Գազի օգտագործումը բարձրացնում է աշխատանքի կուլտուրան, բարելավում արդյունաբերության և բնակչության սանիտարական հիգիենիկ պայմանները։ Կենցաղում հնարավորություն է ստեղծվում մեկ մարդու հաշվով տարեկան տնտեսել 3,5—4 ռուբլի, որը միայն 1960 թվականին կազմեց 170 միլիոն ռուբլի։

Առավել մեծ նշանակություն ունի գազը մետալուրգիայում՝ դոմնային և մարտենյան պրոցեսների համար. այն հնարավորություն կտա 1965 թվականին գործող մարտենյան ցեխերի արտադրողականությունը ավելացնել տարեկան 2,5 միլիոն տոննա պողպատով և մետալուրգների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 10 տոկոսով։

Բնական գազը մեծ արդյունավետությամբ օգտագործվում է ցեմենտի և ապակու արդյունաբերության, ինչպես նաև ջերմոցային տնտեսության մեջ։

ՍՍՌՄ վառելիքային բալանսի ստրուկտուրայում կատարված փոփոխությունների շնորհիվ (ի հաշիվ նավթի ու բնական գազի) յոթնամյակի ընթացքում երկիրը կտնտեսի 12,5 միլիարդ ռուբլի։

ՍՄԿՊ ԿԿ-ի Մայիսյան (1958 թ.) պլենումը վիթխարի խնդիրներ դրեց քիմիական արդյունաբերության առաջ, մասնավորապես սինթետիկ նյութերի արդյունաբերության արագ զարգացման համար։ Սինթետիկ նյութերը մեծ նշանակություն ունեն ժողովրդական տնտեսության, բնակչության՝ հագուստեղենի, կոշիկեղենի, կոշկեղենի, կենցաղային լայն սպառման ապրանքների արագ աճող պահանջների բավարարման համար։ Բնական գազի և նավթարդյունաբերության նոր բազայի վրա օրգանական սինթեզի բուռն զարգացումը ժամանակակից քիմիական արդյունաբերության բնորոշ հատկանիշն է։

Բնական գազի կիրառումը քիմիական արդյունաբերության մեջ հնարավորություն կընձեռի արտադրելու լայն ասորտիմենտի քիմիական ապրանքներ, զգալիորեն կնվազեցնի կապիտալ ներդրումների քանակը, հումքով լիովին կբավարարի արդյունաբերության ժամանակակից պահանջները, կիջնի արտադրանքի ինքնարժեքը։ Նախատեսվում է 1965 թվականին քիմիական մշակման ենթարկել 4 միլիարդ խորանարդ մետր բնական գազ և մի քանի միլիարդ խորանարդ մետր էլ կծախսվի ակտիվ մրի արտադրության համար։ Բացի այդ, քիմիական վերամշակման կենթարկվեն նավթարդյունահանման ժամանակ արտազատվող ուղեկից գազերը և նավթամշակումից ստացվող մի քանի միլիարդ տոննա գազը, որոնց արժեքը ժամանակակից էկոնոմիկայում չափազանց մեծ է։ Օրինակ՝ գազաբենզինի գործարանը, որն օրական մշակում է մեկ միլիոն խորանարդ մետր ուղեկցող գազ, կարող է արտադրել 70 տոննա գազային բենզին, 200 տոննա էթան, 300 տոննա պրոպան և 150 տոննա բութան, որոնք ժողովրդատնտեսական մեծ արժեք ունեն։ Այսպես՝ էթանից կարելի է ստանալ սինթետիկ սպիրտ, որի համար ծախսվում է մեծ քանակությամբ սննդամթերք՝ հացահատիկ, կարտոֆիլ և շաքարի մաթ։ Միայն 1955 թվականին մեր երկրում սպիրտի արտադրության համար ծախսվել է 2 միլիոն տոննա հացահատիկ և 700 հազար տոննա շաքարի մաթ։ Էթանից կարելի է ստանալ նաև պոլիէթիլեն, որն օգտագործվում է տեխնիկայի մի շարք ճյուղերում և կենցաղում, էթիլենի օքսիդը կիրառվում է չսառչող հեղուկների արտադրության մեջ, որոնք գործի են դնում ցածր ջերմաստիճանի տակ աշխատող մոտորները։

Բացի սպիրտից, պրոպանից ստացվում է նաև պրոպիլեն։ Վերջին տարիներին պրոպիլենից ստացվել է մի նոր, բացառիկ թանկարժեք նյութ՝ պոլիպրոպիլեն, որն իր օգտավետ հատկություններով տարբերվում է պոլիէթիլենից։ Պոլիպրոպիլենից կարելի է պատրաստել ջրատար և գազատար սիստեմների խողովակներ, որոնք ավելի ձեռնտու են բնակարանային շինարարության մեջ և արդյունաբերական ձեռնարկություններում։ Պրոպիլենի վերամշակումից կարելի է ստանալ նաև ֆենոլ-ֆորմալդեհիդային պլաստմասսաներ, օրգանական ապակի և այլ կարևոր նյութեր։

Բութանը հումք է հանդիսանում սինթետիկ կաուչուկի, մեթիլէթիլկետոնի ստացման համար. վերջինս ընտրողական լուծիչ է։

Բերված օրինակները մասամբ արտահայտում են նավթարդյունահանման ուղեկցող գազերի վերամշակման հեռանկարները։

Բնական գազը հիմնականում պարունակում է մեթան և փոքր քանակությամբ էթան, բութան և այլ սահմանային ածխաջրածիններ։ Այդ նյութերը սկզբնանյութեր են այս կամ այն քիմիկատի սինթեզի համար։ Այն գազը, որն իր մեջ պարունակում է 95—98 տոկոս մեթան, պիտանի է ամիակի, ազոտաթթվի, ամիակային պարարտանյութերի, միզանյութի, ացետիլենի, պլաստմասսաների և շատ այլ քիմիկատների արտադրության համար։



Օրգանական սինթեզի արդյունաբերության մեջ ներկայումս ացետիլենը հանդիսանում է հիմնական սկզբնանյութերից մեկը։ Ացետիլենից կարելի է ստանալ պլաստմասսաներ, սինթետիկ կաուչուկ, օրգանական թթուներ, սինթետիկ մանրաթել, լաքեր ու ներկեր, սպիրտներ ու սոսինձներ և շատ այլ նյութեր։ Մինչև վերջին ժամանակներս ացետիլեն ստանում էին բացառապես կարբիդի կալցիումի քայքայումից։ Այս եղանակը պահանջում էր կապիտալ մեծ ներդրումներ, արտադրությունը շատ աշխատատար էր։ Վերջին տարիներին զգալի չափով ընդլայնվել են ացետիլենի վերամշակման ուղիները։ Դրա համար անհրաժեշտ էր հայտնաբերել հումքի առավել էժան աղբյուրներ։ Այդպիսի հումքի աղբյուր են բնական գազը, նավթամշակման ժամանակ առաջացող և ուղեկցող գազերը։

Ացետիլենի ստացումը ածխաջրածնի հումքից օքսիդացման պիրոլիզով կամ մեթանի էլեկտրակրեկինգով պահանջում է 2,5 անգամ ավելի քիչ կապիտալ ներդրումներ մեկ տոննա տարեկան հզորության համար, քան կարբիդային եղանակի ժամանակ. ացետիլենի ինքնարժեքը իջնում է 25—30 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է 3 անգամ։

Հայաստան ներմուծվող բնական գազի որոշ մասը նախատեսվում է ծախսել քիմիական վերամշակման համար։ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանում կփակվի թանկարժեք կարբիդ-կալցիի արտադրությունը և կկազմակերպվի ացետիլենի ստացումը մեթանի օքսիդացման պիրոլիզի մեթոդով։ Այս մեթոդի ժամանակ ծախսվում է առավել քիչ էլեկտրաէներգիա, որը շատ կարևոր հանգամանք է։ Մեծ քանակով ստացված ացետիլենը հնարավորություն կտա ընդլայնելու Կիրովի անվան և պոլիվինիլացետատի գործարանների արտադրանքը, ինչպես նաև ստեղծելու պոլիվինիլքլորային խեժերի և քացախաթթվի մեծածավալ արտադրություն։

Կիրովականի քիմիական կոմբինատում նախատեսված է ամիակի արտադրությունը փոխադրել բնական գազի բազայի վրա։ Բնական գազի ուղղակի կոնվերսիայի միջոցով ստացվող ջրածինը կօգտագործվի ամիակի սինթեզի համար, իսկ ածխաթթվային գազը կարտամղվի մթնոլորտ։

Բնական գազի քիմիական վերամշակման խնդիրը ինչպես Կիրովի անվան գործարանում, այնպես էլ Կիրովականի քիմկոմբինատում, դեռևս լրիվ լուծված չէ։ Ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական ինստիտուտների և ժողտնտխորհի առջև խնդիր է դրվում մշակել նոր, առավել ընդունելի սխեմա, որը հնարավորություն կստեղծի բնական գազից ստացված բոլոր նյութերի կոմպլեքսային օգտագործման համար։

---

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆԸ

Կոլեգիալությունը պարտիական ղեկավարության կարևորագույն սկզբունքն է, որն անմիջականորեն բխում է ՍՄԿՊ Կանոնադրության պահանջներից։ Այս սկզբունքի պահպանումը հնարավորություն է տալիս ճիշտ վճռելու հարցերը, ժամանակին հայտաբերելու և վերացնելու թերությունները։

Կոլեկտիվ ղեկավարության արժանիքն այն է, որ հենվում է ո՛չ միայն ղեկավարների, այլև պարտիական ակտիվի, լայն մասսաների փորձի վրա։

Անդրադառնալով կոլեկտիվ ղեկավարության նշանակությանը, Վ. Ի. Լենինն ասում էր. «Այս կամ այն թյուրիմացությունը վերացնելու համար պետք է հենց սկզբից ընդգծել, որ պարտիայի Կենտկոմի քարտուղարը կենսագործում էր բացառապես այն հարցերը, որոնց մասին կային Կենտկոմի կոլեգիալ որոշումներ, որոնք ընդունված էին Կազմբյուրոյի կամ Քաղբյուրոյի կամ Կենտկոմի պլենումի կողմից։ Այլ կերպ Կենտկոմի աշխատանքները չեն կարող ճիշտ ընթանալ» (հատոր 30, էջ 566)։

Հարցերի կոլեգիալ քննարկումը չի կարելի պատկերացնել առանց թերությունների բազմակողմանի քննադատության և ինքնաքննադատության, առանց ընդունված որոշումների կենսագործման համար տարվող կազմակերպական աշխատանքի։ Այդ սկզբունքի խախտումը տանում է դեպի քննադատության բթացում, ծնում է ինքնահանգստացման և մեծամտության տրամադրություններ։ Պարտիական ղեկավարը պետք է ո՛չ միայն սովորեցնի մասսաներին, այլև սովորի նրանցից, առանց վիրավորվելու ընդունի քննադատությունը, ստեղծի բոլոր պայմանները ներքևից եկող քննադատության ծավալման համար, ճիշտ գնահատի քննադատական դիտողությունները և դրանցից անի համապատասխան եզրակացություններ։

Պարտիական ղեկավարը պետք է մշտապես հիշի պարտիայի այն ցուցումները, որ կոլեկտիվ կերպով գործելու հմտությունը՝ առանձին ընկերների կամքը կոլեկտիվի կամքին ենթարկելու պատրաստակամությունն է, որը մեզանում կոչվում է իսկական պարտիական արիություն և, որ առանց այդպիսի արիության, չի կարող գոյություն ունենալ կոլեկտիվ ղեկավարություն։

Պարտիական հաշվետու-ընտրական ժողովները, որտեղ կոմունիստները քննարկում էին տնտեսական և կուլտուրական շինարարության, ինչպես նաև պարտիական կյանքի հասունացած հարցերը և սկզբունքային քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտում համարձակորեն բացահայտում էին թերությունները, հանդիսացան ներպարտիական դեմոկրատիայի, կոլեկտիվ ղեկավարության ցայտուն դրսևորումը։



Սկզբնական պարտիական կազմակերպություններում կոլեկտիվ ղեկավարության օրգաններն են՝ պարտիական բյուրոն և ժողովը։ Այս օրգաններն իրենց գործունեությամբ փոխադարձաբար կապված են և լրացնում են միմյանց։ Կոլեկտիվության սկզբունքի պահպանման լավագույն օրինակ է Պոլիվինիլացետատ գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության աշխատանքը (բյուրոյի քարտուղար Գ. Վանյան)։ Այստեղ բոլոր կարևորագույն քաղաքական և արտադրական հարցերը լուծվում են կոլեգիալ կերպով։ Հարցերի նախապատրաստման գործում ներգրավվում են մեծ թվով կոմունիստներ և անպարտիական ակտիվիստներ։

Անցյալ տարվա վերջերին № 02 ցեխի կոլեկտիվը չկարողացավ կատարել վինիլացետատի արտադրության պլանը. խախտվում էր տեխնոլոգիական ռեժիմը, նկատելիորեն մեծ էին վինիլացետատի հումքի կորուստները։ 1960 թվականի հունվարին գործարանի պարտիական բյուրոն քննարկեց այդ ցեխի աշխատանքը։ Հարցի նախապատրաստումը հանձնարարվեց պարտիայի անդամներ Գ. Մխիթարյանին, Ն. Նաջարյանին, Ա. Գալստյանին և ուրիշների։ Բրիգադան հանգամանորեն ուսումնասիրեց գործերի վիճակը նշված տեղամասում և այդ մասին զեկուցեց պարտբյուրոյին։ Քննարկումը լուրջ թերություններ երևան բերեց ցեխի տեխնիկական ղեկավարության, հերթափոխի պետերի, ապարատավարների աշխատանքում։ Պարզվեց, որ ցեխում թույլ է աշխատանքային ու տեխնիկական կարգապահությունը, որ արտադրության ցավոտ հարցերը վճռելիս ինժեներա-տեխնիկական աշխատողները հանդես չեն բերում ստեղծագործական նախաձեռնություն։ Այդ ամենի համար ժողովի մասնակիցները քննադատեցին ղեկավարությանը։ Ցեխի ցուցանիշների բարելավման նպատակով կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ մշակելուց բացի, պարտիական բյուրոն որոշեց ուժեղացնել ցեխի ղեկավարությունը. ցեխի պետ նշանակվեց պարտիայի անդամ Գ. Մխիթարյանը։ Բյուրոյի անդամներն սկսեցին ավելի հաճախ լինել ցեխում, գործնական օգնություն ցույց տալ բանվորներին՝ իրենց աշխատանքային թերությունները վերացնելու։ Նրանց օգնեցին նաև պատի թերթը և գործարանային ռադիոհանգույցը, որոնց միջոցով ծաղրում, խարազանում էին խոտանարարներին ու անկարգապահներին։ Շուտով դրությունը փոխվեց. ցեխը սկսեց կատարել պետական պլանները, բարելավվեցին որակական ցուցանիշները։

Սակայն կոլեգիալության սկզբունքը դեռևս ամենուրեք չի կենսագործվում։ Կան պարտիական կազմակերպություններ, որտեղ բյուրոյի անդամների միջև բացակայում է համաձայնությունը, քարտուղարը ձգտում է հարցերը միանձնյա կերպով վճռել. այդ ամենը հասցնում են անցանկալի արդյունքների։ Այդպես է դրությունը, օրինակ, Կույբիշևի անվան կահույքի ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունում։

Ֆաբրիկայի պարտբյուրոյի քարտուղար ընկ. Վ. Բաղդասարյանը հաշվի չի առնում բյուրոյի անդամների կարծիքը, կոլեկտիվ քննարկման չի ենթարկում ձեռնարկության պարտիական և արտադրական հասունացած հարցերը։ Հենց դրանով պետք է բացատրել ֆաբրիկայում գոյություն ունեցող բազմաթիվ թերությունները, որոնց հետևանքով ցածր է կահույքի որակը, անբավարար են կատարելագործվում արտադրական պրոցեսները և այլն։

Պարտիական ղեկավարության կոլեգիալությունը չպետք է դրսևորվի միայն պարտիական ժողովները, բյուրոյի նիստերը սիստեմատիկաբար, ժա-

մանակին գումարելու, դրանք լավ կազմակերպելու և կոնկրետ, գործնական
որոշումներ ընդունելու մեջ։ Ամենօրյա ստուգման բացակայությունը կարող
է ձևական դարձնել, արժեքազրկել ամենակարևոր որոշումն իսկ, ծնել ան-
պատասխանատվության, գործի նկատմամբ վնասակար ինքնահանգստաց-
ման զգացում։ Այսպես, օրինակ, ավտոպահեստամասերի գործարանի պար-
տիական կազմակերպության (բյուրոյի քարտուղար Ս. Մկրտչյան) ժողովների
և բյուրոյի նիստերի որոշումներում կան բազմաթիվ արժեքավոր մտքեր,
գործնական առաջարկություններ։ Դրանցում նշված են նաև որոշումների
կատարման համար պատասխանատու անձանց անունները։ Բայց արտադրու-
թյան մեջ գործերի վիճակի խոր ուսումնասիրությունը, առանձին ցեխերի և
տեղամասերի աշխատանքի վերլուծությունը ցույց են տալիս, թե որքան ան-
հետևողական է պարտբյուրոն ընդունված որոշումների կատարումն ապահո-
վելու գործում։

Պարտբյուրոն խիստ բարեհոգի, լիբերալ է այն անձանց նկատմամբ,
որոնք արհամարհում են պարտիական կազմակերպության որոշումները.
պատշաճ խստապահանջության դեպքում պարտբյուրոն կկարողանար ազդել
գործարանի գլխավոր ինժեներ Ն. Հովսեփյանի, տեխնիկական բաժնի պետ
Ա. Դանիելյանի և գործարանի շատ ուրիշ ղեկավար աշխատողների վրա, որ-
պեսզի նրանք հրաժարվեին պարտիական որոշումների կատարման նկատ-
մամբ անպատասխանատու վերաբերմունքից։

Պարտիական աշխատանքում կոլեգիալության սկզբունքի ճիշտ կիրառ-
ման համար պակաս կարևոր նշանակություն չունի պարտիայի անդամների
ակտիվ մասնակցությունը արտադրական հարցերի քննարկմանը։ Հաճախ
պարտիական ժողովներում ելույթ է ունենում ղեկավարների միայն մի նեղ
շրջան, իսկ անմիջապես արտադրության մեջ զբաղված, տեղերում գործերի
վիճակը ավելի լավ իմացող կոմունիստները չեն մասնակցում մտքերի փո-
խանակությանը։ Օրինակ, ավտոպահեստամասերի գործարանում ամբողջ 1960
թվականին կայացած պարտիական ժողովներում ելույթ են ունեցել ընդամենը
մի քանի բանվորներ. մինչդեռ նրանց ակտիվ մասնակցությունը արտադրա-
կան հարցերի քննարկմանը կարող էր նպաստել ձեռնարկության ետ մնալու
պատճառների հայտաբերմանը, առանձին ցեխերի և տեղամասերի աշխատան-
քային թերությունների վերացման համար միջոցառումներ մշակելու գործին։

Խնդիրների կոլեգիալ լուծումը պետք է զուգակցվի օպերատիվության,
քննարկվող հարցերի նկատմամբ ցուցաբերվող գործնական մոտեցման հետ։
Վ. Ի. Լենինը քաղաքական ղեկավարներին նախազգուշացնում էր, որ կոլե-
գիալությունը անհրաժեշտ նվազագույնից չպետք է ավելի լինի ո՛չ կոլեգիա-
ների անդամների թվի, ո՛չ աշխատանքը գործարար կերպով վարելու առու-
մով, «ճառերն» արգելելու, կարծիքների փոխանակումը մեծագույն արագու-
թյամբ կատարելու, և միմյանց գործնական ճշգրիտ առաջարկներով իրազեկ
պահելու իմաստով։

Ահա թե ինչու քննարկվող հարցի նկատմամբ լուրջ մոտեցման չափանիշ
պետք է համարել ոչ թե մտքերի փոխանակության ժամանակ հանդես եկող-
ների քանակը, այլ, թեկուզ, փոքրաթիվ, բայց գործնական արժեք ունեցող
ելույթների բովանդակությունը։

Պարտիական աշխատանքում կոլեգիալության սկզբունքի կիրառման նոր
ձևերից են ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող պարտիական



հանձնաժողովները, որոնք կազմակերպված են սկզբնական պարտիական
կազմակերպություններում։ Գոյության համեմատաբար կարճ ժամանակամի-
ջոցում այդ հանձնաժողովները դրսևորվեցին որպես կոլեկտիվ գործունեու-
թյան օրգաններ։

Աշխատանքի բավական փորձ ունեն Կիրովի անվան գործարանի պարտ-
կազմակերպությանը կից ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող
հանձնաժողովները։ Հանձնաժողովի անդամների միջև պարտականություննե-
րի պարզորոշ բաժանումը, նրանց անձնական պատասխանատվությունը աշ-
խատանքի որոշակի տեղամասերի համար հանձնաժողովների գործունեու-
թյունը դարձնում են ճկուն և արդյունավետ։

Հարցերի կոլեգիալ քննարկումն ու լուծումը պետք է սերտորեն զու-
գակցվեն հանձնարարված գործի նկատմամբ անձնական պատասխանատվու-
թյան հետ. դեռ 1919 թվականին Սովետների համառուսական VII համագու-
մարում Վ. Ի. Լենինը իր զեկուցման մեջ ասում էր. «...ինչպես կոլեգիալու-
թյունն անհրաժեշտ է հիմնական հարցերի քննարկման համար, այնպես էլ
անհրաժեշտ է միանձնյա պատասխանատվություն և միանձնյա տնօրինու-
թյուն, որպեսզի քաշքշուկ չլինի, որպեսզի անկարելի լինի պատասխանա-
տվությունից խուսափել» (հատոր 30, էջ 304)։

Պարտիական կյանքի լենինյան նորմերը նախատեսում են ՍՄԿՊ Կանո-
նադրության պահանջների խիստ պահպանում, դեմոկրատական ցենտրալիզմի
սկզբունքների հետևողական կենսագործում, պարտիայի անդամների հարա-
ճուն ակտիվացում, կոլեգիալություն՝ պարտիական կյանքում, կարևորագույն
հարցերի քննարկման ժամանակ։

Միայն կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի խստագույն պահպանման
ժամանակ է հնարավոր պարտիական կազմակերպությունների և, ամբողջու-
թյամբ վերցրած, պարտիայի նորմալ աշխատանքը։

Գ. ՆԵՐՍԻՍՅԱՆ

## ԱՂՋԻԿՆԵՐԻ ԱԿՈՒՄԲԸ

Աղջիկներին հասարակական աշխատանքներում ակտիվորեն ընդգրկելու,
նրանց կուլտուրական հանգստի գործը լավագույն ձևով կազմակերպելու
խնդիրը երկար ժամանակ մտահոգում էր Ապարանի հասարակական կազ-
մակերպություններին։ Ճիշտ է, դասախոսություններ, զեկուցումներ ու զրույց-
ներ կազմակերպվում էին աղջիկների շրջանում, բայց և այնպես դրանք չէին
բավարարում օրվա պահանջները։ Կոմերիտական ժողովներում ու շրջանային
կոնֆերանսներում հաճախակի էին խոսում գյուղական աղջիկների հետ տար-
վող կուլտուր-մասսայական աշխատանքների անբավարար վիճակի մասին.
շրջանի շատ գյուղերում դեռևս պահպանվում էին հին սովորությունները։
Աղջիկների մեծ մասը պասիվ էր, չէր հաճախում ակումբ, չէր մասնակցում
գեղարվեստական ինքնագործունեության և սպորտ խմբակների աշխատանք-
ներին։

ՀԼԿԵՄ Ապարանի շրջկոմը դեռևս 1958 թվականի մարտ ամսին հրավի-

թեց աղջիկ երիտասարդության շրջանային հավաք, որտեղ խնդիր դրվեց ստեղծել աղջիկների շրջանային ակումբ։ Հավաքից անմիջապես հետո ԼԿԵՄ շրջկոմի բյուրոն զբաղվեց ակումբի ստեղծման աշխատանքներով։ Սկզբում դժվար էր կռահել, թե ինչպիսին պետք է լինի այն, սակայն շուտով մշակվեց ակումբի կանոնադրությունը։ Որոշվեց ակումբում ընդգրկել ինչպես շրջկենտրոնի, այնպես էլ գյուղերի աղջիկներին։ Այս հարցում մեծ զգալի օգնություն ցույց տվեց պարտիայի շրջանային կոմիտեն։ Կոմպլեկտավորվեցին և սկսեցին գործել տարբեր խմբակներ։ Ստեղծվեց ակումբի խորհուրդ՝ բաղկացած 11 հոգուց. նախագահ ընտրվեց ՀԼԿԵՄ շրջկոմի արտահաստիքային քարտուղար Մարգո Պողոսյանը։

Որոշվեց տարբեր խմբակների պարապմունքներն անցկացնել շաբաթը երկու անգամ։ Ակումբի համար ձեռք բերվեցին համապատասխան սենյակներ. կոմերիտականները վերանորոգեցին և կահավորեցին դրանք։

Աղջիկների ակումբը, որը կոչվում է Լուսիկ Լիսինյանի անվամբ, երկու տարի է, ինչ կանոնավոր գործում է և դրական աշխատանքի հարուստ փորձ ունի։ Կյանքն այնտեղ աշխույժ է անցնում։

Ակումբն ունի իր օրգանը՝ «Մեր ակումբը» պատի թերթը, որին թղթակցում են ո՛չ միայն շրջկենտրոնի, այլև գյուղերի աղջիկները։ Թերթում լուսաբանվում է շրջանի կյանքը աղջիկների մասնակցության տեսանկյունից։ Խրախուսվում են այն աղջիկները, որոնք ակտիվություն ու նախաձեռնություն են հանդես բերում ակումբի աշխատանքներում։

Հետաքրքրական է ակումբին կից գործող խմբակների աշխատանքը։ Կարու ձևի և ասեղնագործության խմբակում ընդգրկված են մեծ թվով աղջիկներ։ Դրանցից ոմանք գծագրում են թղթի վրա, ոմանք ձեռագործում, մյուսները թղթից ձևվածք են պատրաստում։ Այստեղ հաճախողների թիվը ավելի շատ է, ամեն մեկը ցանկանում է որքան կարելի է շատ բան սովորել և սովորածը կիրառել տանը։ Այստեղ աղջիկները սովորում են նոր վերնազգեստներ կարել ու ձևել, տարբեր տեսակի ձեռագործներ կատարել։ Պարապմունքների ժամանակ խմբակի ղեկավարը (Ա. Քոչարյան) մեծ բարեխղճությամբ է կատարում իր պարտականությունները։ Աղջիկները գործել են հիանալի ձեռնոցներ, ասեղնագործել են տարբեր նմուշի ու գույնի ծածկոցներ, որոնք արժանի են ուշադրության։

Տնարարության և խոհարարության խմբակում աշխատանքը եռում է, ինչպես մի մեծ խոհանոցում։ Սեղանի վրա դրված են զանազան մթերքներ, ամաններ։ Ունկնդիրները ուշադրությամբ հետևում են խմբակի ղեկավար Սոնյա Մարտիրոսյանի ամեն մի խոսքին ու շարժումին։ Բայց աղջիկները չեն բավարարվում նրա պատմածով. նրանք էլ իրենց հերթին խելացի առաջարկներ են անում, մտածում, թե, օրինակ, ինչպես կարելի է տվյալ մթերքներով համեղ, գեղեցիկ խմորեղեն պատրաստել։ Չէ՞ որ ճաշակով ու գեղեցիկ սեղան պատրաստելու համար կարևոր են նաև մթերքների արտաքին տեսքն ու դասավորությունը։

Պարապմունքը շարունակվում է... Աղջիկներն անհամբեր սպասում են խմորեղենի պատրաստվելուն։ Պարապմունքի վերջում երևում է, որ թխվածքները լավ են ստացվել, գեղեցիկ ու համեղ։

Բացի խոհարարության վերաբերյալ պարապմունքներից, ակումբի անդամները ծանոթանում են նաև տնարարությանը։



Աշխույժ են անցնում այն խմբակի պարապմունքները, որտեղ սովորեցնում են գեղեցիկ ու ճաշակով բնակարան կահավորել։ Երբ խմբակի ղեկավարը հայտարարեց, թե հաջորդ պարապմունքին լսելու են «Ինչպես կահավորել բնակարանը» զրույցը, բոլորը ոգևորվեցին։ Աղջիկները մեծ ակտիվությամբ մասնակցեցին հարցերի քննարկմանը, հայտնելով իրենց կարծիքը։ Մի բան է կահավորել երկու սենյականոց բնակարանը, այլ բան է կահավորել մեկ սենյակը, քանի որ վերջինս գեղեցիկ կահավորելու համար պահանջվում է ավելի շատ եռանդ։ Այս դեպքում յուրաքանչյուր առարկա պետք է դասավորել այնպես, որ քիչ տեղ գրավի և միաժամանակ չխախտի կահավորման միասնությունը։ Աղջիկները սովորում են նաև հագուստի վրայից կեղտաբիծ մաքրել, ծաղիկ աճեցնել, անկողին հավաքել, արդուկել, հագուստներ լվանալ և այլն։

Արդյունավետ են նաև գրական խմբակի պարապմունքները. մասնակիցները ծանոթանում են նշանավոր գրողների ստեղծագործություններին։ Պարապմունքների ժամանակ գրական ստեղծագործության շուրջ տեղի է ունենում մտքերի, կարծիքների աշխույժ փոխանակություն, իսկ վերջում ամփոփվում է պարապմունքը։ Վերջերս տեղի ունեցավ Գագիկ Ոշտունու «Մագիլների մեջ» գրքի քննարկումը, որի մասին զեկուցեց խմբակի անդամ Նինա Էլոյանը։ Քննարկումը շատ աշխույժ անցավ. բոլոր ունկնդիրները կարդացել էին գիրքը։

Աղջիկների ֆիզիկական դաստիարակության նպատակով ակումբում հաճախակի կազմակերպվում են սպորտային խաղեր. երբ աղջիկները նոր էին եկել ակումբ, նրանցից շատերը խուսափում էին սպորտից, իսկ այժմ հրապուրվում են դրանով։ Սկզբում նրանք սովորում էին վոլեյբոլի խաղի կանոնները. հետո սկսեցին պարապել մարմնամարզությամբ։ Աղջիկները ձմռանը զբաղվում են դահուկային սպորտով, որը լավ միջոց է նրանց մարզման համար։ Վոլեյբոլը և դահուկային սպորտը արդեն դարձել են ակումբի անդամների սիրելի զբաղմունքը։

Ակումբում կյանքը մեծ չափով փոխվեց, երբ դրվեց ռադիոընդունիչ։ Ձեռք բերվեցին պարային երաժշտության մի շարք ձայնագրություններ. ակումբի անդամները մեծ սիրով սովորում ու կատարում են ժամանակակից երգեր ու պարեր, մասնակցում ինքնագործ խմբակներին։ Աղջիկները հաճույքով են սովորում ժամանակակից պարերը։

Ակումբում մշտապես եռ ու զեռ է. չկա մի ամիս, որ այնտեղ պարապմունքներից բացի ուրիշ միջոցառումներ չանցկացվեն։ Սիստեմատիկաբար կազմակերպվում են հարց ու պատասխանի երեկոներ, բանավոր ամսագրեր, գրքի քննարկումներ, երեկույթներ, ցերեկույթներ, զրույցներ, դասախոսություններ։ Ուշագրավ էր վերջերս հրավիրված «Եկեք անկեղծ խոսենք» թեմայով հավաքը։ Աղջիկները մեծ ակտիվություն ցուցաբերեցին «Սեր, ընտանիք և բարոյականություն», «Ինչպիսին պետք է լինի մարդը կոմունիզմի ժամանակ» հարցերի քննարկման ընթացքում։

Այժմ ակումբը դարձել է շրջանի աղջիկների կուլտուրական հանգստի ու ժամանցի սիրված վայրը։ Այստեղ այցելողը շատ բան է սովորում։ Ակումբ են հաճախում 100-ից ավելի աղջիկներ—կոլտնտեսուհիներ, բժշկուհիներ, բանվոր-ծառայողներ, ուսուցչուհիներ։

Ակումբի խորհուրդը լայնորեն օգտագործում է տեղի կարող ուժերը։

Լուրջ ուշադրություն է հատկացվում աղջիկներին գիտության, արվեստի ու գրականության նվաճումների հետ ծանոթացնելուն։

Ապարանի միջնակարգ դպրոցի բարձր դասարաններում սովորող աղջիկները ևս մեծ սիրով են մասնակցում ակումբին կից գործող տնարարության, կար ու ձևի խմբակների պարապմունքներին, որոնք նպաստում են նրանց ծրագրային նյութը դպրոցում յուրացնելու գործին։

ՀԼԿԵՄ շրջկոմի հետ միասին ակումբի խորհուրդը աշխատանք է կատարում գյուղական աղջիկ երիտասարդության շրջանում։ Գյուղերում սիստեմատիկաբար անց է կացվում ակումբային օր, որը նպաստում է կոլտնտեսությունների աղջիկների ինքնագործունեության զարգացմանը։ Ակումբային օրերին գյուղական աղջիկները սովորում են զանազան թխվածքներ պատրաստել, վերնազգեստներ կարել ու ձևել, ծանոթանում գրականության ու արվեստի նորույթներին։ Նման միջոցառումներ անց են կացվել շրջանի Մելիքգյուղ, Հովիտ, Լուսագյուղ, Մուլքի և այլ գյուղերում։ Ակումբի աշխատանքի շնորհիվ շրջանում ծավալվել է աղջիկ երիտասարդության ինքնագործունեությունն ու նախաձեռնությունը։ Քուչակ, Հովիտ, Վարդաբլուր, Լուսագյուղ և այլ գյուղերի աղջիկները շաբաթվա մեկ օրը հայտարարել են աղջիկների օր։

Առանձին գյուղերում էլ շաբաթը մեկ անգամ անց են կացվում երգիպարի երեկոներ։ Այս ակումբը, որ չունի ոչ մի հաստիքային աշխատող, լավագույն օրինակ է ծառայում կուլտուր-մասսայական աշխատանքները կազմակերպելու համար։

Ակումբի աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ երբ կոմերիտմիության շրջկոմը, կամ սկզբնական կոմերիտական կազմակերպությունները նախաձեռնություն են հանդես բերում, ապա գործը պսակվում է հաջողությամբ։

Վերջերս Ալագյազի ենթաշրջանում տեղի ունեցավ քուրդ աղջիկների և երիտասարդ կանանց հավաք, որին մասնակցում էին ավելի քան 150 հոգի։ Հավաքում ընտրվեց խորհուրդ՝ աղջիկների մեջ տարվող աշխատանքները վարելու համար։ Ապարանի աղջիկների օրինակով այստեղ կազմակերպվեց քուրդ աղջիկների ակումբ։

Վ. ՄԵԼՔՈՆՅԱՆ

ՀԼԿԵՄ Ապարանի շրջկոմի քարտուղար

---

## ԶԱՐԳԱՑՆԵՆՔ ՄԵՐ ԼԱՎ ԸՆԿՈՒԶԵՆԻՆ

Ընկուզենին շատ արժեքավոր պտղատու ծառ է և Հայկական ՍՍՌ-ում ունի կարևոր տնտեսական նշանակություն։

Ընկույզի յուղը լայնորեն օգտագործվում է տեխնիկական նպատակների՝ եթերային յուղեր ստանալու, յուղաներկ, բարձրորակ լաք, տպագրական թանաք, քիմիական տուշ, օճառ և այլ նյութեր պատրաստելու համար։ Անհրաժեշտ մաքրության պայմաններում ընկույզի յուղը կարելի է առանց փոփոխության պահպանել 2 տարի։

Ընկույզի միջուկը որպես սնունդ մեծ արժեք ունի և կալորիականու-



թյամբ ցորենի հացին գերազանցում է 3 անգամ, մսին՝ 4, կարտոֆիլին՝ 8, կաթին՝ 15, տանձին՝ 14 անգամ։ 20 ընկույզը կարող է բավարարել մարդու ճարպի օրական պահանջը և սպիտակուցային նյութերի օրական պահանջի $1/_6$ մասը։ 400 գրամ ընկույզի միջուկը կարող է բավարարել մարդու կալորիաների օրական պահանջը։

Սննդի արդյունաբերության մեջ ընկույզը գործադրվում է զանազան տեսակի հրուշակեղեն՝ հալվա, գոզինախ, խորիս և կոնֆետեղեն պատրաստելու համար, իսկ նրա խակ պտուղներից մուրաբա է պատրաստվում։

Տեղական ընկույզների միջուկը միջին հաշվով պարունակում է 71—74 տոկոս յուղ, զգալիորեն ավելի շատ, քան Միության մյուս ռեսպուբլիկաներում աճող ընկույզներինը։ Մեկ ցենտներ միջուկից տաք եղանակով մամլելու միջոցով ստացվում է 50—60, իսկ սառը եղանակով՝ 30—40 տոկոս յուղ։ Ընկույզի քուսպը բարձրորակ է, սննդարար և օգտագործվում է իբրև անասնակեր։ Բժշկության մեջ ընկույզի յուղը գործածվում է ճիճուների դեմ և աչքի մի շարք հիվանդությունների բուժման, ինչպես և մաշկը արևի այրվածքներից պահպանելու համար։

Ընկուզենու բնափայտը ամուր է, դիմացկուն, հեշտ մշակվող և հիանալի հղկվող։ Իր գույնի, բնական ամրության և գեղեցկության շնորհիվ այն օգտագործվում է զանազան նպատակներով։ Բնափայտը, հատկապես ծառելունդը, արժեքավոր շինանյութ է բարձրորակ կահույք պատրաստելու համար։ Այն չորանալուց հետո չի փչանում և տեսքը չի կորցնում։ Նրանից ստանում են ամենագեղեցիկ ֆաներաներ, որոնք օգտագործվում են պահարաններ, հանդերձապահարաններ և այլ թանկարժեք կահույք պատրաստելու համար։ Ընկուզենու կեղևը և պտղի կանաչ պատյանն օգտագործում են կաշի դաբաղելու համար։ Կեղևի, տերևների, արմատների և պտուղների կանաչ պատյանի մեջ կան սև և շագանակագույն ներկանյութեր, որոնք օգտագործվում են տեքստիլ արդյունաբերության մեջ բրդյա և մետաքսյա գործվածքներ ներկելու համար։ Տեղական ազգաբնակչությունը այդ օգտագործում է նաև գորգեր ներկելու համար։ Տերևները հարուստ են եթերային յուղերով, հոտավետ և դաբաղող նյութերով։

Ընկուզենին համարվում է «C» վիտամինի արտադրության աղբյուրներից մեկը։ Այսպիսով ընկուզենին՝ արմատներից մինչև տերևները, կարող է լայն կերպով օգտագործվել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում։ Ընկույզի ծառը միաժամանակ շատ հարմար արժեքավոր տեսակ է քաղաքների, գյուղերի, հանգստյան տների, հիվանդանոցների, դպրոցների, մանկահրապարակների, բակերի ու ճանապարհների կանաչազարդման համար։ Ընկուզենին բարձր է գնահատվում նաև այն պատճառով, որ պտուղները երկար ժամանակ լավ պահպանվում են և շատ հարմար են փոխադրման համար։

Սովետական Միությունում ընկուզենին հիմնականում տարածված է հարավում՝ Միջին Ասիական ռեսպուբլիկաներում, Ղրիմում, Մոլդավիայում, Հարավային Ուկրաինայում, Հայաստանում, Վրաստանում և Ադրբեջանում։ Հայկական ՍՍՌ-ում ընկուզենին լավ աճում և առատ բերք է տալիս ծովի մակերևույթից 350—2000 մետր բարձրության վրա, գլխավորապես Եղեգնաձորի, Գորիսի, Ղափանի, Աշտարակի, Կոտայքի, Շահումյանի, Ալավերդու, Իջևանի, Շամշադինի և այլ շրջաններում։

Ռեսպուբլիկայի այգեգործական շրջաններում ընկուզենին մշակվում է այգիների շուրջը, այգամիջյան ճանապարհների, ոռոգման ջրանցքների և առուների, ինչպես նաև ճանապարհների ու խճուղիների երկարությամբ, խմբերով աճում է անտառներում, ձորերում, սարալանջերում։ Ռեսպուբլիկայում շատ ընկուզենիներ կան կոլտնտեսությունների այգիներում և կոլտնտեսականների տնամերձ հողերում, իսկ սովխոզներում ընկուզենի քիչ կա. եղածն էլ, հիմնականում, երիտասարդ ծառեր են, որոնք դեռ պտուղ չեն տալիս։ Այդ տնտեսություններում միայն վերջին տարիներս են սկսել ընկուզենի աճեցնել։

Հայաստանի շատ վայրերում կան ընկուզենու մի քանի տեսակներ, որոնք դիմանում են 30 աստիճան ցրտին։ Բայց, սովորաբար, 25-ից ցածր ջերմաստիճանում նկատվում է 1—2 տարեկան ճյուղերի ցրտահարություն. ընդհանուր առմամբ ընկույզի ծառն ապրում է 200—300 տարի։

Ընկուզենին ավելի պահանջկոտ է հողի խոնավության, քան բերրիության նկատմամբ։ Այն չի աճում չափից դուրս չոր, ինչպես նաև ճահճային հողերում։ Հայկ. ՍՍՌ-ի շատ շրջաններում ընկուզենին աճում է քարքարոտ, հումուսով աղքատ, բայց խոնավ հողերում, հատկապես գետերի և ձորերի հովիտներում, բայց դիմանում է նաև քսերոֆիտ պայմաններում։

Մեկ ընկուզենին տալիս է 200—300 կիլոգրամ բերք։ Այսպիսով, կոլտնտեսային առևտրի գներով հաշված (կիլոգրամը մեկ ռուբլի) յուրաքանչյուր ծառից ստացվում է 200—300 ռուբլի եկամուտ։ Եթե դրան ավելացնենք նաև այն, որ ընկուզենին ագրոտեխնիկական ոչ մի ծախս չի պահանջում, բացի բերքահավաքից, ապա ակներև կդառնա, թե որքան նպատակահարմար և եկամտաբեր է այդ ծառի լայն տարածումը։ Հետևապես, անհրաժեշտ է լայն չափերով ընկուզենին տարածել ռեսպուբլիկայի բոլոր այն շրջաններում, որտեղ հնարավոր է նրա բազմացումը։

Բազմամյա օդերևութաբանական տվյալների հիման վրա, ընկուզենու աճման շրջանները Հայաստանում կարելի է բաժանել հետևյալ գոտիների։

1. Ցածրադիր գոտի — Արարատյան դաշտավայրը (ռեսպուբլիկայի ամենակոնտինենտալ մասը), որի բարձրությունը ծովի մակերևույթից հասնում է 800—1000 մետրի։ Այդ գոտու տերիտորիայի մեջ մտնում են Հոկտեմբերյանի, Էջմիածնի, Արտաշատի շրջանները և Վեդու ու Շահումյանի շրջանների որոշ մասը։

2. Նախալեռնային գոտի — գտնվում է ռեսպուբլիկայի կենտրոնական և հարավային մասերի չորային վայրերում, ծովի մակերևույթից 1000—1900 մետր բարձրության վրա։ Այդ գոտու թեթև կրային հողերը, երկարատև աշունը և ամառային բարձր ջերմաստիճանը նպաստում են ընկուզենու աճմանը։ Այստեղ այն աճում է ձորերում, խմբերով և առատ պտուղ է տալիս։ Եղեգնաձորի շրջանի Ալայազի ձորում, Գլաձոր և Վերնաշեն գյուղերից բարձր ձորակներում, քարքարոտ սարերի լանջերին, հենց քարերի մեջ բարձրանում են ընկույզի ծառերը։ Կոտայքի, Շահումյանի և, հատկապես, Աշտարակի շրջաններում ընկուզենին մշակվում է այգիներում։

3. Անտառա-տափաստանային գոտի — ռեսպուբլիկայի հյուսիս-արևելյան մասերը, որոնք աչքի են ընկնում մեղմ, չափավոր և համեմատաբար խոնավ կլիմայով։ Բարձրությունը ծովի մակերևույթից 400—1900 մետր է։ Նշված գոտու մեջ մտնում են Ալավերդու, Նոյեմբերյանի, Շամշադինի, Իջևանի, Գորիսի, Ղափանի և Մեղրու շրջանները։ Ամառվա բարձր ջերմաստիճանը, մեծ քանակով մթնոլորտային տեղումները, ցրտահարության վտանգից երկար ժամանակ զերծ լինելը հնարավորություն են ստեղծում այս գոտու մի շարք վայրերում մշակելու ընկուզենի։ Մեղրիում, Ղափանում, Գորիսում բացի այգիներում տնկված ընկուզենիներից, այն աճում է նաև անտառներում։

4. Լեռնա-տափաստանային գոտի, որի մեջ են մտնում ռեսպուբլիկայի հյուսիսային, կենտրոնական և հարավային մասերի սարահարթերը։

Այսպիսով, ընկուզենու մշակության համար խիստ բարենպաստ պայմաններ կան ռեսպուբլիկայի անտառա-տափաստանային և նախալեռնային գոտիներում։

Ռեսպուբլիկայում ընկուզենու հետագա զարգացումն ապահովելու համար Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը 1957 թվականի հուլիսի 3-ին որոշում ընդունեց «Կոլտնտեսություններում, սովխոզներում և անտառային տնտեսություններում ընկուզա-պտղային կուլտուրաների տնկարկների տարածությունները լայնացնելու մասին», որի համաձայն Հայկական ՍՍՌ-ում 1958—1960 թթ. պետք է հիմնվեին 2100 հեկտար ընկուզենու տնկարկներ, ընդ որում՝ կոլտնտեսություններում 1000, սովխոզներում 600 և անտառային տնտեսություններում 500 հեկտար։ Պետք է ասել, որ նշված կազմակերպությունները թերացել են այս կարևոր որոշումը կատարելու գործում։ Այսպես՝ 1959—60 թթ. ընթացքում ռեսպուբլիկայում ընդամենը հիմնվել է 376 հեկտար ընկուզենու տնկարկներ, որից սովխոզներում՝ 44 հեկտար, կոլտնտեսություններում՝ 210 հեկտար և անտառային տնտեսություններում՝ 102 հեկտար։

Ընկուզենին մեծ մասամբ պետք է տնկել ճանապարհների եզրերին, որովհետև այն տնտեսական շատ կարևոր արժանիքների հետ միասին ունի նաև դեկորատիվ նշանակություն՝ գեղեցիկ, գմբեթաձև սաղարթի, մուգ-կանաչ, փետրաձև տերևների և բնի ու կմախքային ճյուղերի գեղեցիկ սպիտակ գույնի շնորհիվ։ Հաշվի առնելով ընկուզենու տնտեսական և այլ արժանիքները, անհրաժեշտ է ճանապարհների եզրերին տնկվող այլ ծառատեսակները փոխարինել ընկույզի ծառերով։ Ադրբեջանական ՍՍՌ-ում, Նուխի-Զաքաթալայի միջև, ավելի քան 100 կիլոմետր ընկած տարածության վրա ձգվում են ընկուզենիներ. նրանց ճյուղերը միանալով կազմում են ծառածածկ, զով, կանաչազարդ մի ուղի։ Հայկական ՍՍՌ-ում՝ Իջևանի շրջանում Երևանից Թբիլիսի տանող ճանապարհի երկու կողմերին, Աչաջուր գետի վրա գտնվող Կրիվոյ կամրջի և Ուզունթալայի միջև մի քանի կիլոմետր տարածություն նույնպես ծածկված է ընկուզենիներով, որոնք արդեն պտուղ են տալիս։

Ընկուզենու լայն տարածման համար անհրաժեշտ է պետական և կոլտնտեսային տնկարկներում աճեցնել մեծ քանակությամբ ընկուզենու տնկիներ և հատկացնել կոլտնտեսություններին, սովխոզներին և անտառտնտեսություններին։ Ընկուզենու տնկարաններ կարելի է հիմնել Եղեգնաձորի, Մեղրու, Գորիսի, Ղափանի, Աշտարակի, Կոտայքի, Իջևանի, Շամշադինի, Նոյեմբերյանի և Ալավերդու շրջանների կոլտնտեսություններում։ Այդ տնկարանները միշտ էլ կլինեն եկամտաբեր, որովհետև ընկուզենու տնկիների պահանջը մեծ է։

Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

թյունը, կազմակերպչական տաղանդը և հրամանատարական հմտությունը, նրան 89-րդ դիվիզիայից փոխադրում է Ղրիմի ռազմաճակատ, նշանակելով մարտական գործողությունների մեջ գտնըվող 390-րդ հայկական դիվիզիայի հրամանատար:

Գնդապետը փետրվարի սկզբին հասնում է Կերչ և դիվիզիան ընդունում է ռազմաճակատի առաջավոր գծում, պաշտպանական կատաղի մարտերի պայմաններում: Նա թշնամու ավիացիայի ու հրետանու ուժեղ ռմբակոծության տակ անընդհատ հետևում էր զորամասերի մարտերին, մեկ գնդից մյուսը, մեկ գումարտակից մյուսն անցնելով հասնում էր մինչև առաջավոր գծում կանգնած ստորաբաժանումները, ծանոթանում նրանց հետ, զրույցներ ունենում հրամանատարների, քաղաշխատողների ու մարտիկների հետ, նրանց քաջալերում և մղում հերոսական սխրանքների: Պլանավորելով միավորման մարտական գործողությունները՝ գնդապետ Զաքյանը, ինչպես միշտ, շարժվում էր առաջապահ զորամասերի հետ: Հարձակման ժամանակ հենց թշնամու խրամատներին մոտիկ ստեղծում էր իր դիտակետը և այնտեղից ղեկավարում մարտը: Նա համարձակ ու աներեր էր. ամենակրիտիկական մոմենտներին անգամ պահպանելով սառնասրտությունը, պարզորոշ հրամաններ էր արձակում, որոնցում արտահայտվում էին նրա ուժեղ կամքն ու վճռականությունը:

— Ամբողջ սովետական երկրի բախտը, նրա հետ նաև Հայաստանի բախտը, այժմ վճռվում է ռազմաճակատում,— շարունակ այս խոսքերն էր հիշեցնում նա իր մարտիկներին: Զաքյանը կոչ էր անում. «կռվենք անձնազոհությամբ, դիվիզիայի համար նվաճենք գվարդիականի պատվավոր կոչում»:

Ռազմիկները, Սովետական Հայրենիքի ազատագրության գաղափարով համակված, վստահ իրենց հրամանատարի ուժերի վրա, անձնազոհությամբ առաջ էին նետվում մարտերի մոլեգնող փոթորիկների մեջ, կատարում առաջադրանքը:

Հայկական դիվիզիան Ղրիմի ռազմաճակատի մյուս միավորումների թվում ավելի քան հինգ ամիս կատաղի մարտեր մղեց գերմանական հետևակի, կրահատանկային ուժերի և ուժեղ ավիացիայի դեմ և փառավոր էջեր գրեց Ղրիմի համար մղված մարտերի տարեգրության մեջ, որոնց մասին բազմիցս նշված է կարմիրբանակային մամուլում. Ղրիմի ռազմաճակատի հրամանատարության և ՍՍՌՄ Պաշտպանության ժողկոմատի մի շարք հրամաններում ու այլ փաստաթղթերում:

1942 թվականի փետրվարի 27—28-ին և, մանավանդ, մարտի 13—16-ին, Ղրիմի ռազմաճակատի մեր զորքերը հարձակողական խիզախ մարտեր էին մղում թշնամու դեմ: Այդ ճակատամարտերում հերոսաբար էին մարտնչում սովետական զորքերը, նրանց շարքերում նաև Զաքյանի ղեկավարած հայկական զորամասերը: Մարտերի ամենավճռական պահերին գնդապետը հայտնվելով առաջավոր գծում, մարտիկներին ասում էր.

— Ոչ մի քայլ ետ. եթե անհրաժեշտ է՝ կմեռնենք հենց այստեղ...

Հայկական զորամասերը տոկունությամբ պահպանելով իրենց դիրքերն ու ետ մղելով հիտլերականների բոլոր հակագրոհները, հարկադրում էին թշնամուն նահանջել դեպի իր ելման դիրքերը: Սովետական արիասիրտ ռազմիկները, համառորեն հետապնդելով հակառակորդին, նրան հարվածում էին իր պաշտպանության բնագծերում:

Փետրվար-մարտյան կռիվներում զգալի կորուստներ կրեց հակառակորդը, որը մարտի դաշտում թողեց մեծ թվով կենդանի ուժ, զինվորական հանդերձանք, զենք, սպառազինություն. որոնց թվում՝ ավելի քան 120 տարբեր տրամաչափի հրանոթներ, վեցփողանի նոր կոնստրուկցիայի 10 ականանետ և այլն:

Հաղթանակները մեծ ոգևորություն առաջ բերին հայկական դիվիզիայում: Ինչպես հայտնի է, դեռ այդ կռվից առաջ, մարտի 14-ին սոցիալիստական մրցման մեջ մտնելով հարևան հատվածում գործող եղբայրական վրացական դիվիզիայի հետ, հայկական դիվիզիայի քաղբաժինը, ամբողջ միավորման անունից ստանձնած պարտավորությունների վրա ավելացրել էր մի նոր կետ, որտեղ ասված էր. «Ներկա պայմանների կատարման չափանիշը որոշելու ենք մարտական գործողությունների արդյունքով: Մենք պայքարում ենք դիվիզիայի գվարդիականի կոչման համար»:

Այս լրացուցիչ առաջարկությունը վրացական դիվիզիայի ներկայացուցիչներն ընդունել էին մեծ սիրով, իսկ հայ ռազմիկները համոզված էին, որ անպայման կկատարեն ստանձնած բոլոր պարտավորությունները: Դրա երաշխիքը փետրվարմարտյան կռիվներում դիվիզիայի զորամասերի տարած հաղթանակներն էին:

1942 թվականի մարտ ամսին կրած պարտությունից հետո հիտլերյան հրամանատարությունն իր խախտված դրությունը կարգավորելու, Կերչի թերակղզին ամբողջապես գրավելու համար շտապ կարգով արևմտյան ռազմաճակատից, օկուպացված Ֆրանսիայից Ղրիմ է փոխադրում գերմանական 22-րդ տանկային դիվիզիան, և երթից անմիջապես մարտի նետում: Համալրված ուժերով, հանկարծակի հարձակումով թշնամին նպատակ ուներ կազմալուծել մեր պաշտպանությունը և հեշտությամբ հասնել իր նպատակին:

Բայց հիտլերականները խիստ սխալվեցին: Կերչի թերակղզում ծավալվեց կատաղի ճակատամարտ: Թշնամին մարտի 20-ին 100-ից ավելի տանկերի ուղեկցությամբ մեկը մյուսի հետևից երեք անգամ կատաղի գրոհներ ձեռնարկեց ամբողջ ռազմաճակատի և հայկական զորամասերի գրաված դիրքերի վրա: Բայց ամեն անգամ հանդիպելով ուժեղ դիմադրության, ետ շպրտվեց, կորցնելով շատ տանկեր ու կենդանի ուժ:

Զաքյանն իր հմուտ հետախուզության միջոցով, նախօրոք տեղեկանալով գերմանական նոր միավորման ժամանման մասին, «արժանի դիմավորում» էր պատրաստել: Նա գործի էր դրել իր միավորման ամբողջ հրետանին, ականանետները, հակատանկային զենքերը, որոնք անընդհատ գնդակների հեղեղ էին թափում հակառակորդի պողպատե հրեշների՝ տանկերի վրա, խոցում նրանց: Հիտլերականները միայն հայկական դիվիզիայի հատվածում թողեցին խփված ավելի քան 47 տանկ, որոնցից 8-ը՝ գրավվեց միանգամայն սարքին վիճակում: Այսպես, հայկական զորամասերը մյուս զորամասերի հետ միասին մարտի 20-ին դաժան դաս տվին թշնամուն:

Գնդապետը թևավորված էր առյուծասիրտ ռազմիկներով, որոնք հրաշքներ գործեցին 22-րդ գերմանական տանկային դիվիզիայի ջախջախման մարտերում: Զաքյանը մոտենալով մարտիկներին, հրամանատարներին, քաղաշխատողներին, ամեն մեկին անձամբ ջերմորեն շնորհավորում էր հաղթանակի համար, ոգեշնչում նրանց նոր սխրագործությունների: Մի քանի օր հետո թշնամին նոր ուժերով և ուժեղ ավիացիայի օգնությամբ վերսկսում է գրոհները: Հայկական զորամասերի տեղամասի ուղղությամբ հակառակորդի օդանավերին հաջողվում է գտնել Զաքյանի հրամանատարական կետի տեղը, որից հետո այդ վայրն առնվում է ուժեղ հրետանային կրակի տակ, ռմբակոծվում է նաև օդից:

Բայց մարտերին հմտացած գնդապետը խուճապի չի մատնվում. արհամարհելով դիտակետի շուրջը պայթող արկերի ու ականների տարափը, նա սառնասրտությամբ շարունակում է ղեկավարել մարտերը:

Գնդակոծության տակ, կռվի լարված մոմենտին Զաքյանը հրամանատարական կետից գնում է դեպի մարտնչող ստորաբաժանումները՝ անձամբ գրոհը ղեկավարելու: Բայց դեռ խրամուղիներին չհասած, մահացու վիրավորվում է թշնամու արձակած ական բեկորից: Մոտիկ գտնվող մարտիկներն ակնթարթաբար դուրս են բերում կրակի տակից սիրելի հրամանատարին:

Գնդապետն արյունաքամ էր լինում... կիսակենդան վիճակում նա իր մոտ է կանչում դիվիզիայի հրետանու պետ փոխգնդապետ Բագրատ Դանիելյանին, տեղեկանում մարտի ընթացքի մասին և ապա վերջին ուժերը հավաքելով, գլուխը վեր բարձրացրած՝ հրամայում է.

— Հրետանային ուժե՛ղ կրակ պիղծ ֆաշիստների վրա, հանուն մեր Հայրենիքի... առա՜ջ դեպի հաղթանակ...

Այդ եղավ դիվիզիայի փառապանծ հրամանատար Զաքյանի վերջին հրամանը:

Հրամանատարի մահը ցնցող տպավորություն թողեց. ամբողջ դիվիզիան հավաքվեց սգո միտինգի՝ մարտական դրոշները խոնարհած սիրելի հրամանատարի դիակի վրա: Մարտիկները, հրամանատարներն ու քաղաշխատողները երդվում են կրկնապատկել իրենց եռանդը թշնամու դեմ մըղվող կռվում, վրեժ լուծել զոհված հրամանատարի համար: Նրանք կատարեցին իրենց խոստումը:

Ղրիմի ռազմաճակատի հրամանատարությունը ՀԿ(բ)Պ Կենտկոմին ուղարկած ցավակցական հեռագրում գնդապետ Զաքյանին որակելով որպես «Կարմիր Բանակի ականավոր հրամանատար», որոշեց նրա դիակը Կերչից փոխադրել Հայաստան և հանդիսավորությամբ թաղել Երևան քաղաքում:

...Սպան ավարտեց գնդապետ Զաքյանի մասին իր պատմությունը: Մի րոպե լռելուց հետո, նա գլուխը վեր բարձրացնելով նայեց սիրելի հրամանատարի բրոնզյա արձանին: Բոլոր ունկնդիրները, որ գտնվում էին սպայի պատմածի ուժեղ տպավորության տակ, մեքենայորեն իրենց հայացքները ուղղեցին դեպի արձանը, որի վրա ստվերախիտ ճյուղերի միջից թափանցել էին արևի շողերը. թվում էր, թե Զաքյանը գոհ է իրեն այցի եկած ընկերներից, պիոներ-դպրոցականներից և մեղմ ժպտում է նրանց...

Արդեն երեկոյանում էր. ոչ ոք այլևս հարց չտվեց սպային: Ունկնդիրները խոր հոգոց հանելով մոտեցան կիսանդրուն, իրենց ձեռքի ծաղիկները դըրին պատվանդանի վրա ու հեռացան, իրենց հետ տանելով անջնջելի հիշողություններ հայ ժողովրդի արիասիրտ զավակի, մարտական կոմդիվի մասին:

Ե. ԽԱԼԵՅԱՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՕԴԱՉԻՆԵՐԻՑ ՄԵԿԸ

1918 թվական: Սովետական երիտասարդ ռեսպուբլիկայի գլխին կախվել է ահավոր վտանգ՝ օտարերկրյա իմպերիալիստները ներքին թշնամիների հետ դաշն կնքած, փորձում են ճզմել, արյան մեջ խեղդել բանվորա-գյուղացիական նորաստեղծ պետությունը: Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու անմիջական մասնակցությամբ ծնունդ է առնում ռազմա-օդային նավատորմը, որի ջոկատներն ուղարկվում են ռազմաճակատ:

Մեր երկրի հյուսիսում օկուպանտների դեմ կռվող ավիացիոն կորամասերի թվում էր Ալեքսանդր Սերգեյի Սլեպյանի հրամանատարությամբ գործող Կոստրոմայի ավիաջոկատը: Կովկաս ներխուժող թշնամու դեմ մարտնչող ավիացիոն կորամասերի շարքում էր Արմենակ Տիգրանի Սարգսյանի ավիաջոկատը:

Սովետական երկրի պաշտպանների մեջ էին նաև Թորոս Ավագի Թորոսյանի հրամանատարությամբ գործող 47-րդ և Մոգիլևսկայայի առաջին ավիաջոկատները, որոնք մասնակցում էին Հարավ-Արևմքյան ռազմաճակատում ծավալված գործողություններին: 1918 թվականի օգոստոսին, երբ առանձնահատուկ կարևորություն էին ստացել Հյուսիսային Կովկասի համար մղվող մարտերը, անհրաժեշտություն զգացվեց այնտեղ ուղարկել ավիացիոն կորամասեր: Վ. Ի. Լենինի ցուցումով ստեղծվում է ավիացիոն դիվիզիոն՝ փինվորական օդաչու Թորոս Թորոսյանի հրամանատարությամբ:

Երկար որոնումներից հետո մեզ հաջողվեց գտնել Վ. Ի. Լենինի ցուցումով հայ փինվորական օդաչու Թորոս Թորոսյանին Սովետական Ռեսպուբլիկայի առաջին ավիաջոկատներից մեկի հրամանատար նշանակելու վերաբերյալ փաստաթուղթը, որը պահպանվում է Սովետական Բանակի պետական կենտրոնական արխիվում (ֆոնդ 29, գ. 14, թ. 131): Ահա այն.

«Բարձրագույն Ռազմական Խորհրդի շտաբ.
21 օգոստոսի 1918 թ.
№ 10116
քաղ. Մոսկվա

Մատակարարման Գլխավոր Պետին.
Ռազմա-օդային նավատորմի Գլխավոր վարչությանը.
Պատճեն՝ Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Նախագահ
Վ. Ի. Լենինին

Ժողկոմսովետի նախագահ ընկ. Վ. Ի. Լենինը կարգադրել է ձեռնարկել բոլոր միջոցները Հյուսիս-Կովկասյան օկրուգի համար կազմավորելու ավիացիոն դիվիզիոն՝ երեք ջոկատից, յուրաքանչյուրում ոչ պակաս քան հինգական ինքնաթիռ, և ընթացքի մասին իրեն իրազեկ պահել:

Կազմավորման համար պատասխանատու անձ է հանդիսանում զինվորական օդաչու Թորոս Թորոսյանը:

Կազմավորման համար անհրաժեշտ է օգտագործել արդեն պատրաստի ջոկատները, երբ այդպիսիք կան:

Ըստ տեղեկությունների Մոսկվայում են գտնվում երկու կամ երեք պատրաստի ջոկատներ:

Հաղորդելով վերոհիշյալի մասին, խնդրում եմ տալ ամենաշտապ կարգադրություններ, ընթացքի մասին տեղյակ պահելով Բարձրագույն Ռազմական Խորհրդին:

Բարձրագույն Ռազմական Խորհրդի զինվորական ղեկավար՝ Բոնչ Բրուևիչ
Զինվորական կոմիսար (ստորագրություն)
Շտաբի պետ (ստորագրություն)



Ո՞վ է Թորոսյանը: Արխիվային մի շարք փաստաթղթեր ու ժամանակակիցների հուշերը հնարավորություն են տալիս պարզելու հայ ժողովրդի անհայտ հերոսներից մեկի կյանքի չափազանց ուշագրավ դրվագները, որոնք հետաքրքրական են ընթերցողների համար:

Թորոս Թորոսյանը ծնվել է 1893 թվականին, Միջին Ասիական Մերվ քաղաքում: Նրա հայրը՝ Ավագը, Լեռնային Ղարաբաղից էր, աղքատ գյուղացի: Ապրուստի միջոցներ հայթայթելու համար դառն որոնումները հարկադրել են նրան թողնել ծննդավայրը և Բաքու մեկնել: Այստեղ նա իր համագյուղացիների հետ աշխատանքի է անցել Բաքվի նավթահանքերում, բայց խեղճ, անուսում գյուղացին անկարող էր իր ընտանիքի համար ապրուստի միջոցներ հայթայթել: Տառապալից աշխատանքն ու անմարդկային շահագործումը նրան հնարավորություն չտվեցին լծկան առնելու համար փող հավաքել:

Կարիքը նրան նետեց Միջին Ասիա՝ բայերի մոտ բատրակության: Երկար տարիների տառապանքից հետո, ծախելով իր ունեցած-չունեցածը և պարտք վերցնելով մոտիկ մարդկանցից, Ավագը կարողացավ մի ձի գնել և իր փոքրիկ կառքասայլակով բեռներ տեղափոխել:

Թորոսը կիսում էր հոր տառապանքները: Դասերից ազատ ժամերին նա դառնում էր հոր օգնականը, իսկ երբ մեծացավ, հաճախ փոխարինում էր նրան: Բանակ կանչվելով նա սկսեց աշխատել նախ՝ որպես մեխանիկ, իսկ հետո՝ մեծ դժվարություններով կարողացավ ընդունվել Մոսկվայի օդաչուների դպրոցը: Ավիացիոն դպրոցում նա փութաջան կերպով սովորում էր ավիացիոն տեխնիկան, ամբողջ օրը նա մեխանիկների հետ էր, կլանում էր ձեռքն ընկնող հատ ու կենտ գրքերը: Ավիադպրոցի հրահանգիչներից մեկը, նկատելով Թորոսի հակումները, սկսեց ծանոթացնել նրան թռիչքի թեորիայի հետ, նախապատրաստել նրան ինքնուրույն թռիչքի:

— Թորոս, դու լավ մարտական օդաչու կլինես, աշխատիր ավելի համառությամբ,— ասաց նրան ռուս ավիահրահանգիչը:



Օդաչուական դպրոցում սովորելու տարիներին Թորոսն առիթներ է ունենում շփվելու Մոսկվայի բանվորների և ուսանողների հետ, հաղորդակից դառնալու նրանց ռևոլյուցիոն մտորումներին. այդ ամենի մասին պատմում էր իր ընկերներին՝ օդաչուական դպրոցի կուրսանտներին:

Մի անգամ, հավաքած իր համախոհներին, Թորոսը պատմում էր նրանց թարմ լուրերը: Դա 1916 թվականի ապրիլին էր: Այդ պահին հավաքվածների խմբին մոտեցավ եֆրեյտոր Կոնոնովը և սկսեց ականջ դնել: Նկատելով այդ, Թորոսը փոխեց զրույցի թեման: Դա դուր չեկավ եֆրեյտորին, որը անպատվեց Թորոսին: Սկզբում Թորոսը շատ հանգիստ խնդրեց Կոնոնովին չվիրավորել իր արժանապատվությունը: Դրանից եֆրեյտորն ավելի կատաղեց և սկսեց լուտանքներ թափել Թ. Թորոսյանի հասցեին: Համբե-

1960 թվականի հոկտեմբերի 14-ին Թուրքիայում սկսվեց նախկին ռեժիմի ղեկավարների դատավարությունը։ Այս դատավարությունն իր վրա է բևեռել ոչ միայն Թուրքիայի, այլև համաշխարհային հասարակայնության ուշադրությունը։ Բայար-Մենդերես կլիկը մեղադրվում է կաշառակերության, հափշտակությունների, բարոյական անկման, 1955 թվականի սեպտեմբերի ստամբուլյան ջարդի կազմակերպման, ուսանողների սպանության ու կոնստիտուցիայի խախտման մեջ։

Դատավարության ժամանակ պարզվեց, թե ինչպիսի մեծ մասշտաբի էին հասնում նախկին ղեկավարների բարոյական քայքայվածությունը, կաշառակերությունը, իշխանությունների կամայականությունը, ժողովրդի դեմ կատարված ոճրագործությունները։ Դատավարությունը ցույց տվեց նաև, թե ինչպես էր նենգել նախկին ռեժիմը, թե նրա պարագլուխներն ինչպես էին չարաշահում իշխանությունը իրենց ու իրենց մերձավորների հարստանալու համար։ Բայարի, Մենդերեսի, Քորալթանի ընդհանուր թվով 38 հոգու համար դատարանը պահանջում է գնդակահարություն, իսկ մյուսների համար բանտարկություն և աքսոր։

Սակայն հետաքրքրական է, որ դատավարությունն սկսվեց այնպիսի մի հանցագործության քննումով, ինչպիսին է Բայարի կողմից նվեր ստացած շոտլանդական շան վաճառումը կենդանաբանական այգուն։ Այնուհետև մեծ աղմուկ բարձրացավ Մենդերեսի ապօրինի զավակի հարցի շուրջ։ Այն, որ բուրժուական քաղաքական գործիչները զբաղվում են կաշառակերությամբ և անբարոյականությամբ, նորություն չէ։ Փոխանակ դատավարությունն սկսելու կոնստիտուցիայի խախտումների և մասսայական ձերբակալությունների ու սպանությունների քննումից, այն սկսվեց բուրժուական քաղաքական գործիչներին հատուկ սովորական «հանցագործություններից», որոնք միշտ էլ նրանց գործունեության ուղեկիցներն են։

Անհետևողականությունն արտահայտվեց նաև նրանում, որ բանտերից ազատվեցին դեմոկրատական պարտիայի բազմաթիվ աչքի ընկնող գործիչներ։

Սակայն դատավարությունը նրանց պարագլուխների նկատմամբ շարունակվում է և կտևի մինչև այս տարվա մարտ ամիսը։

Այս դատավարությունը փաստորեն ամերիկյան գործակալների դատն է, չնայած այն հանգամանքին, որ նրանց ոգեշնչողներն ու հովանավորողները մնում են ազատության մեջ և ջանք չեն խնայում իրենց կամակատարներին փրկելու համար։

Այժմ Թուրքիայի առջև ծառացած են մի շարք կենսական հարցեր, որոնց լուծումից է կախված երկրի հետագա զարգացումը։ Առաջին հերթին դա հողային հարցն է։ Թուրքիան գյուղատնտեսական երկիր է և ազգաբնակչության գերակշռող մասը զբաղված է գյուղատնտեսության մեջ։ Հողի մասին 1945 թվականի հունիսին ընդունված օրենքը չէր կարող և չլուծեց հողային հարցը, որովհետև այն կոչված էր ամրապնդելու կալվածատերերի ու կուլակների տիրապետությունը գյուղում։ Թեև այդ օրենքով որոշ քանակությամբ հող բաժանվեց հողազուրկ գյուղացիներին, բայց առ այսօր միլիոնավոր թուրք գյուղացիներ հողազուրկ ու սակավահող են։ Բայց բանը միայն գյուղացիներին հող բաժանելու մեջ չէ, քանի որ այդ դեռ նրանց չի փրկում դաժան շահագործումից։ Թուրք աշխատավոր գյուղացին պահանջում է հողի ազգայնացում և շահագործման բոլոր ձևերի իսպառ վերացում։ Նոր կառավարությունն առայժմ ոչ մի կոնկրետ քայլ չի ձեռնարկում այդ ուղղությամբ, սահմանափակվելով ընդհանուր հայտարարություններով՝ գյուղացիների վիճակը բարելավելու մասին։

Թուրքական բանվոր դասակարգը դաժան շահագործման է ենթարկվում, գտնվելով տնտեսական և քաղաքական ծայրահեղ վատ պայմաններում։ Հեղաշրջումից հետո Թուրքիայում արհմիությունների գործունեությունը որոշ չափով աշխուժացել է, բայց այն դեռ մնում է իշխանությունների խիստ հսկողության տակ։ Արհմիություններին արգելված է քաղաքական գործադուլներ կազմակերպել։ Պետական ծառայողներն ընդհանրապես զրկված են այդ իրավունքից։ Թուրքիայի բանվոր դասակարգը պահանջում է քաղաքական գործադուլների կազմակերպման իրավունք, լեգալ քաղաքական կազմակերպությունների ստեղծման իրավունք։

Երկրում կառավարման ձևի հաստատման ուղղությամբ Գյուրսելի ղեկավարած կոմիտեն իրականացրել է մի շարք միջոցառումներ։ Որոշված է Սահմանադիր ժողով գումարել նոր կոնստիտուցիայի ու ընտրական օրենքի մշակման համար։ Սահմանադիր ժողովի ստատուտի մշակման համար կազմված է հանձնաժողով, որին հանձնարարված է նոր կոնստիտուցիայի մշակման գործը։ Թուրքիայի նոր պառլամենտը պետք է բաղկացած լինի երկու պալատներից։ Վերին պալատի մեջ կմտնեն միայն ԱՄԿ-ի անդամները, իսկ ներքին պալատի մեջ՝ քաղաքական պարտիաների ներկայացուցիչները։ Ըստ հրապարակված օրենքի, բոլոր մինիստրները հանդիսանալու են պառլամենտի անդամներ և ոչ մի օրգան ու անձնավորություն (այդ թվում նույնիսկ պետության ղեկավարը) չի կարող ցրել պառլամենտը։



Անցյալ տարվա դեկտեմբերի վերջերին անցկացվեցին Սահմանադիր ժողովի ընտրությունները։ Դեմոկրատական պարտիայի անդամները չմասնակցեցին ընտրություններին։ Հատկանշականն այստեղ այն է, որ Սահմանադիր ժողովի դեմ բողոքում էին հենց վերջերս բանտերից ազատված մարդիկ։ Իշխանությունները ստիպված եղան միայն Անկարայում ձերբակալելու մոտ 65 մարդ, այդ թվում ռազմաօդային ուժերի նախկին հրամանատար գեներալ Թեքին Արիբուռնուն, պաշտոնաթող մի գեներալի, ժուռնալիստների ու փաստաբանների։ Արդեն որոշում է կայացվել նրանց դատի տալու մասին։

Այս տարվա հունվարի 6-ին Անկարայում բացվեց Սահմանադիր ժողովը, որի վերին պալատի մեջ մտնում են ԱՄԿ-ի 23 անդամներ, իսկ ներքին պալատում՝ քաղաքական պարտիաների 273 ներկայացուցիչներ։ Ներքին պալատում ձայների գերակշռող մեծամասնությունը պատկանում է ժողովրդա-ռեսպուբլիկական պարտիային։

Կազմվեց նաև նոր կառավարություն Գյուրսելի գլխավորությամբ, որի կազմի մեջ մտան նախկին կառավարության 12 և վեց նոր մինիստրներ, որոնցից երկուսը ԺՌՊ-ի անդամներ են, իսկ մեկը՝ Ռեսպուբլիկական գյուղացիական Ազգային պարտիայի անդամ։

Նախատեսվում է պառլամենտական ընտրություններն անցկացնել այս տարվա հոկտեմբեր ամսին, այն հաշվով, որ հոկտեմբերի 29-ին՝ Թուրքական Ռեսպուբլիկայի հռչակման օրը, պառլամենտը հավաքված լինի և հռչակվի երկրորդ Ռեսպուբլիկա։ Բոլոր քաղաքական պարտիաներն ընտրություններին մասնակցելու իրավունք են ունենալու և կիրառվելու է համամասնական ներկայացուցչության սկզբունքը։

Անցյալ տարվա նոյեմբերի 13-ին ԱՄԿ-ն արձակվեց։ Նրա կազմից հեռացվեցին 14 հոգի՝ գնդապետ Թուրքեշը ու նրա կողմնակիցները։ Սկզբնական շրջանում Թուրքեշը ու նրա բոլոր կողմնակիցները պահվում էին կալանքի տակ, իսկ այնուհետև, որպես դիվանագիտական ներկայացուցիչներ մեկնեցին արտասահման։ Փաստորեն նրանք հեռացվեցին քաղաքական ասպարեզից։ ԱՄԿ-ի արձակման կապակցությամբ Գյուրսելը հայտարարեց, որ կոմիտեի գործունեությունը «սկսել էր սպառնալ երկրի բարձրագույն շահերին»։ Նա միաժամանակ հայտարարեց, որ կոմիտեի 14 անդամների հայացքները շատ էին տարբերվում կոմիտեի մեծամասնության կարծիքից, իսկ տնտեսական ու սոցիալական բարեփոխումների նրանց նախագծերն իբր թե սկսել էին երկրում անհանգստություն առաջացնել։

ԺՌՊ-ի և Դեմոկրատական պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության միջև էական տարբերություններ չեն եղել։ ԺՌՊ-ի պարագլուխ Իսմեթ Իննյունն էր, որ ընդունեց ամերիկյան ռազմական «օգնությունը» և երկիրը կապեց սպառազինությունների մրցավազքի քաղաքականության հետ։ Իննյունն էր, որ հեղաշրջումից հետո հայտարարեց, թե Մենդերեսի կառավարության արտաքին քաղաքականությունը ԺՌՊ-ի ժառանգությունն էր, և եթե ԺՌՊ-ն երբևէ նորից անցնի իշխանության գլուխ, ապա երկրի արտաքին քաղաքականությունը չի փոխվի։ Թուրք աշխատավորության շահերը պահանջում են, որպեսզի երկիրը չթողնվի բուրժուական պարտիաների և, հատկապես, ԺՌՊ-ի քմահաճույքին։ Բայց առայժմ ԱՄԿ-ի մեջ հաղթանակել են այն ուժերը, որոնք կապված են ԺՌՊ-ի հետ։

Մյուս կողմից չի բացառվում մի նոր բուրժուական պարտիայի կազմակերպումը, որը կըձգտի իշխանությունն իր ձեռքը վերցնել։ Այդ է վկայում Գյուրսելի հայտարարությունը՝ թե բացառված չէ իր գլխավորությամբ նոր պարտիայի ստեղծումը։

Մոտ ապագան ցույց կտա, թե որ քաղաքական ուժերը կհաղթանակեն պառլամենտական ընտրություններում և ինչպիսի ճանապարհով կընթանա Թուրքիայի ներքին ու արտաքին քաղաքականությունը։

Ռ. ԿՈՆԴԱԿՉՅԱՆ
Ս. ԱՎԱՆԵՍՈՎ

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

# «ԱՇԽԱՐՀՆ ԱՌԱՆՑ ԶԵՆՔԻ, ԱՇԽԱՐՀՆ ԱՌԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ»

Ընդառաջելով բազմաթիվ ընթերցողների ցանկությանը, ռուսերենից թարգմանվել և Հայպետհրատի հրատարակությամբ երկու հատորով լույս է տեսել «Աշխարհն առանց զենքի, աշխարհն առանց պատերազմների» ժողովածուն, որի մեջ զետեղված են Ն. Ս. Խրուշչովի՝ ՍՍՌՄ արտաքին քաղաքականության և միջազգային դրության հարցերի շուրջ ունեցած ելույթներն ու ճառերը, ինտերվյուներն ու զրույցները, որոնք հրապարակվել են սովետական մամուլում 1959 թվականին։ Երկհատոր այդ ժողովածուի մեջ ամփոփված հարուստ նյութերը վառ կերպով ցույց են տալիս այն հսկայական աշխատանքը, որ տանում են Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունն արտաքին քաղաքականության ասպարեզում, իմպերիալիստական ռեակցիայի դեմ բարձրացնելով խաղաղության համար մարտնչող բոլոր ուժերին։ Անխնա մերկացնելով մարդկությանը դեպի նոր կործանարար պատերազմի հորձանուտը հրող բուրժուական ռեակցիոն քաղաքագետների ստոր մեքենայությունները, Սովետական Միությունը պատվար է կանգնում իրենց ազգային անկախության և ազատագրության համար պայքարի ելած բոլոր ժողովուրդներին։

«Աշխարհն առանց զենքի, աշխարհն առանց պատերազմների» ժողովածուի մեջ զետեղված են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարում «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» Ն. Ս. Խրուշչովի զեկուցման՝ կապիտալիզմի հետ սոցիալիզմի տնտեսական մրցությանը և արդի միջազգային դրությանը վերաբերող բաժինը, 1959 թվականին Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկա, Ալբանիա, Լեհաստան, Չինաստան, Հունգարիա, Ամերիկայի Միացյալ Նահանգներ կատարած այցելությունների ընթացքում արտասանած ճառերը և միջազգային հարաբերությունների հարցերին նվիրված նրա մյուս ելույթները։ Բոլոր այդ փաստաթղթերում բացահայտված է մեր դարաշրջանի էությունը, տրված է պատմական կոնկրետ իրադրության գնահատականը, առաջ են քաշված մեր ժամանակի հուզող հարցերը։ Ն. Ս. Խրուշչովի ճառերում, ելույթներում և մյուս նյութերում տնտեսական ու հասարակական-քաղաքական երևույթների, նրանց հետագա զարգացման տենդենցների վերլուծությունից, պատմական դեպքերի ու դեմքերի գնահատականից արվում են կոնկրետ, գիտականորեն հիմնավորված եզրակացություններ։

Զուգակցելով իր անսահման նվիրվածությունը մարդկության ամենանվիրական գաղափարների, մտքի ճկունությունը և խիզախությունը պատմության զարգացման օրինաչափությունների խոր իմացության հետ, հեղինակը նույնիսկ ամենաբարդ, միջազգային քաղաքականության համար առավել առաջնահերթ կարևորություն ունեցող հարցերը բացահայտում է պարզ, բոլորին մատչելի լեզվով, իր լավատեսությամբ, կոմունիզմի գործի վերջնական հաղթանակի նկատմամբ հավատով վարակելով ընթերցողներին։

Մեր ժամանակի ամենից հուզող և ամենահրատապ հարցը, ինչպես բազմիցս նշում է Ն. Ս. Խրուշչովը, դա խաղաղության հարցն է։ Համաժողովրդական պայքար հանուն խաղաղության, ընդդեմ պատերազմի—ահա օրվա գլխավոր խնդիրը։ Խաղաղություն ամբողջ աշխարհում—ահա այն հիմնական պայմանը, որի առկայության հետ կոմունիստները, ողջ պրոգրեսիվ մարդկությունը կապում են իրենց լավագույն իղձերի, վսեմ նպատակների իրականացումը։ Գտնվելով խաղաղության համար ամենուր ծավալված համառ մարտերի առաջին գծում, Ն. Ս. Խրուշչովն ակտիվ պայքարում է միջազգային լարվածությունը թուլացնելու, խաղաղ գոյակցության սկզբունքները կենսագործելու համար։ Վճռականորեն հանդես գալով պատերազմները հասարակության կյանքից բացառելու օգտին, նա հաստատակամորեն պահանջում է փրկել մարդկանց՝ իրար ոչնչացնելու ահեղ զենքից, վերացնել ազգերն ու ժողովուրդներն իրարից բաժանող դարերով ստեղծված արհեստական պատնեշները, ստեղծել ռեալ հող ժողովուրդների մերձեցման, փոխըմբռնման և բարեկամական համագործակցության համար։



Երկհատորյակի բոլոր նյութերում կարմիր թելով անցնում է այն միտքը, թե անհրաժեշտ է ամեն ինչ անել խաղաղության և ազատության մեջ ապրելու՝ մարդկության ամենավսեմ ձգտումը իրականություն դարձնելու համար։

Դա առավել քան անհրաժեշտ է այսօր, երբ մարդկային հանճարը թափանցել է հասարակ աչքի համար անտեսանելի ատոմի խորքը, հայտնաբերել էներգիայի անսպառ աղբյուր, գտել դեպի հեռավոր աստղերը տանող ճանապարհները, մեկը մյուսի հետևից տիրանալով բնության գաղտնիքներին։ Պետք է ամեն ինչ անել, որպեսզի գիտության նվաճումները ոչ թե օգտագործվեն մարդկության ստեղծած քաղաքակրթությունը, նյութական և հոգևոր կուլտուրայի հրաշալիքները կործանման վտանգի տակ պահելու համար, այլ ուղղվեն բնության ամենամեծ հրաշքի՝ մարդու ուժերի հետագա հզորացմանը։ Իսկական հումանիզմի արտահայտություն հանդիսացող այս հետևությունը բխում է սոցիալ-տնտեսական ուժերի հարաբերակցության մեջ հօգուտ սոցիալիզմի կատարված արմատական փոփոխություններից։ «Այժմ կան հսկայական ուժեր,— ասաց Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարում,—որոնք ի վիճակի են հակահարված տալու իմպերիալիստական ագրեսորներին և նրանց պարտության մատնելու, եթե նրանք համաշխարհային պատերազմ սանձազերծեն» («Աշխարհն առանց զենքի, աշխարհն առանց պատերազմների», հատ. I, էջ 30)։

Խաղաղությունը պահպանելու և ամրապնդելու համար հսկայական նշանակություն ունի ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի, սոցիալիստական մյուս երկրների տնտեսական պլանների կատարումը։ Ն. Ս. Խրուշչովը նշում է, որ կատարելով այդ պլանները, խաղաղասեր ուժերը կունենան այնպիսի հզորություն, որ նրանք կկարողանան ստիպել ռազմատենչ իմպերիալիստական շրջաններին վերջնականապես հրաժարվել նոր պատերազմներ հրահրելու մտադրությունից։ Այսպիսով, մինչև երկրագնդի վրա սոցիալիզմի վերջնական հաղթանակը, կապիտալիզմի պահպանման պայմաններում, կստեղծվեն ռեալ հնարավորություններ՝ բացառելու համաշխարհային պատերազմը մարդկային հասարակության կյանքից։

Աշխարհում ստեղծված նոր իրադրությունն անհետաձգելի է դարձրել ներկա լարվածության թուլացումը, միջազգային մթնոլորտի ընդհանուր առողջացումը։ Դրա համար ամենից կարևոր և առաջնահերթ խնդիրը՝ դա զինաթափման պրոբլեմն է, որը Ն. Ս. Խրուշչովը բազմակողմանի քննության է ենթարկում Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի XIV սեսիայի՝ 1959 թվականի սեպտեմբերի 18-ի նիստում արտասանած ճառում. այն զետեղված է ժողովածուի II հատորում։

Զինաթափումը, պատերազմ մղելու միջոցների ոչնչացումը եղել ու մնում է աշխատավորների նվիրական ցանկությունը։ Սակայն, չնայած դրան, միշտ էլ շարունակվել է սպառազինությունների մրցավազքը, որը վերջիվերջո ժողովուրդներին նետել է նոր սպանդի մեջ։ Այդ է ցույց տալիս թեկուզ վերջին երկու համաշխարհային պատերազմների նախապատրաստման պատմությունը։ Բայց մեր օրերում՝ ատոմի, էլեկտրոնիկայի և տիեզերքի նվաճման դարում, սպառազինությունների մրցավազքը ընթանում է չտեսնված տեմպերով, խժռում է վիթխարի միջոցներ և, որ ամենագլխավորն է, մարդկությանը սպառնում է մեծագույն աղետ։

Խաղաղասիրական իր քաղաքականությանը հավատարիմ, Սովետական Միությունը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի XIV նստաշրջանի քննարկմանը մտցրեց համապատասխան միջազգային վերահսկողություն սահմանելու հետ միասին, համընդհանուր և լրիվ զինաթափման վերաբերյալ Դեկլարացիան։ Ընդգծելով, որ Սովետական կառավարության նոր առաջարկը տոգորված է բոլոր ժողովուրդների կայուն խաղաղությունը ապահովելու ցանկությամբ, Ն. Ս. Խրուշչովը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի նիստում հայտարարեց. «Մենք անկեղծորեն բոլոր երկրներին ասում ենք. ի հակակշիռ «Եկեք զինվե՛նք» լոզունգի, որը դեռևս որոշ տեղերում տարածում ունի, մենք առաջադրում ենք «Եկեք լրիվ զինաթափվե՛նք» լոզունգը։ Ավելի լավ է եկեք մրցենք, թե ով իր ժողովրդի համար ավելի շատ բնակարաններ, դպրոցներ, բուժարաններ կկառուցի, ով ավելի շատ հաց, կաթ, միս, հագուստ և այլ սպառողական ապրանքներ կարտադրի, և ոչ թե մրցենք, թե ով ավելի շատ ջրածնային ռումբեր ու հրթիռներ կունենա։ Դա կողջունեն երկրագնդի բոլոր ժողովուրդները» (Ժողովածու, հատ. II, էջ 212)։

Միջազգային ռեակցիան, հատկապես ագրեսիայի և պատերազմի գլխավոր ուժը՝ ամերիկյան իմպերիալիզմը, կատաղի դիմադրություն է ցույց տալիս զինաթափման պրոբլեմի՝ հօգուտ ժողովուրդների շահերի լուծմանը։ «Ազատ աշ-

անգամ, Լենինականի առանձին ձեռնարկություններում կազմակերպվեցին ինճնագործ, հասարակական հիմունքներով գործող կոնստրուկտորական ու տեխնոլոգիական բյուրոներ, բայց ցավոք սրտի այդ արժեքավոր նախաձեռնությունը չարժանացավ թերթի ջերմ պաշտպանությանը։ Թերթի նյութերից ընթերցողը չի իմանում, թե ինչպես է գործում տեքստիլ կոմբինատին կից կազմակերպված երիտասարդ նորարարների ինստիտուտը, ինչպես են տեղերում կազմակերպված գիտա-տեխնիկական պրոպագանդան, նորարարների կոմպլեքսային բրիգադները և այլն։

Ցանկալի կլիներ ավելի հանգամանորեն լուսաբանել կադրերի հանրակրթական ու տեխնիկական ուսուցման ընթացքը, ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտիական վերահսկողության հանձնաժողովների գործունեությունը։

Լենինականի պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպությունները յոթնամյակի առաջին երկու տարում զգալի փորձ են կուտակել տեխնիկական առաջադիմության հիման վրա արդյունաբերության ու տրանսպորտի զարգացման տեմպերն արագացնելու բնագավառում։ Նոր, ավելի մեծ խնդիրներ են լուծելու քաղաքի արդյունաբերության բնագավառի աշխատողները յոթնամյակի երրորդ տարում, որոնք ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի հրավիրման, ստանձնել են սոցիալիստական բարձր պարտավորություններ՝ խոսք տալով ժամկետից շուտ և տեխնիկա-տնտեսական լավագույն ցուցանիշներով կատարել ընթացիկ տարվա պլանը։

«Բանվոր» թերթը պետք է օգնի քաղաքի պարտիական կազմակերպություններին ու աշխատավորներին հաջողությամբ կատարելու այդ խնդիրը, ավելի հաստատակամորեն ընդհանրացնելու և տարածելու պարտիական աշխատանքի փորձը տեխնիկական առաջադիմության բնագավառում։

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

---

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր). ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92 2—04—66, 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—56—92 2—04—66, 2—02—24

ՎՖ 01480 Պատվեր 227 Տիրաժ 10 100

Տպ. 7 մամուլ, մամուլում 68 340 նիշ։ Ստորագրված է տպագրության 20/II 1961 թ.։

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## «ԱՆՁՆԱԿԱՆ» ՌԱԴԻՈԸՆԴՈՒՆԻՉ

1960 թվականին Միդգոշչի «Էլեկտրա» գործարանը (Լեհաստան) սկսեց թողարկել փոքրիկ «անձնական» ռադիոընդունիչ, որն իր լույս աշխարհ գալու համար պարտական է էլեկտրոնիկայի հաջողություններին Լեհաստանում։ «Անձնական» ընդունիչը կշռում է ընդամենը 100 գրամ և հեշտությամբ կարելի է տեղավորել բաճկոնի վերին գրպանում։ Նրա գործողության շառավիղը 70 կիլոմետր է։ Այդ ոչ մեծ տուփը դնելով գրպանում, հիվանդանոցում հերթապահող բժիշկը, միլիցիոները կամ հրշեջ խմբի պետը կարող են հավատացած լինել, որ ժամանակին կլսեն ուղարկված հաղորդագրությունը կամ տագնապի ազդանշանը։

## ՆՈՐ ՑԵՄԵՆՏ

Բուլղարական Ժողովրդական Ռեսպուբլիկայում ստացվել է այսպես կոչված երեք կոմպոնենտային ցեմենտ, որն օգտագործվելու է գլխավորապես խոշոր ջրամբարների կառուցման ժամանակ։ Նոր ցեմենտը բաղկացած է ցեմենտի կլինկերից, շատ մանրացրած ավազից և աղացած հրաբխային տուֆից։

## ԻՆՔՆԱԹԻՌԸ ՃԱՄՊՐՈՒԿԻ ՄԵՋ

Պոլիմերների քիմիայի բնագավառի հաջողությունները թույլ տվեցին ստանալ մեծ ճնշումների դիմացող, թեթև, օդ չթափանցող նյութ։ Մնում էր այդ նյութից պատրաստված բալոնին տալ ինքնաթիռի ագրեգատների ձև։ Կոնստրուկտորները բազմաշերտ կարվածքի ներքին թերթերը միացրին որոշակի երկարության բարակ թելերով։ Բալոնի մեջ օդ լցվելու հետ միասին թելերը ձգվում են, և նա ընդունում է ինքնաթիռի ձևերն ու չափերը։ Փչովի ինքնաթիռի արժանիքը միայն նրա պորտատիվության մեջ չէ։ Այդ մեքենայի երկտեղանի վարիանտը կշռում է ընդամենը 130 կիլոգրամ։ Ինքնաթիռը սովորական ավտոպոմպի միջոցով «հավաքելու» համար հարկավոր է 10—15 րոպե։ Որպեսզի այն օդ բարձրանա, բավական է միայն հարյուր մետրանոց թռիչքային դաշտ։ Այդպիսի փչովի ինքնաթիռը կարող է ժամում զարգացնել 120 կմ. արագություն։

## ԳՐՊԱՆԻ ՈՒՂՂԱԹԻՌ

Թռչելու ժամանակ այս մեքենային նայողը անմիջապես չի իմանա, թե ինչ ապարատ է այն։ Թափանցիկ սկավառակը պտտվելով մարդու գոտու շուրջը՝ դանդաղ բարձրացնում է նրան։

Աշխարհում ամենափոքր ուղղաթիռը բաղկացած է երեք ագրեգատից։ Օղավոր կոշտ «գոտին» ուսափոկի միջոցով ամրացվում է օդաչուի կրծքին. այդ գոտու վրա, որպես առանցքի վրա, պտտվում է ռոտորը երկու թիակներով։ Ռոտորի կենտրոնական մասն իրենից ներկայացնում է վառելանյութային բաք, իսկ թիակների ծայրերին ամրացվում են ռեակտիվ այրիչներ։

Ձեռքերի կտրուկ շարժումով, օդաչուն ստիպում է թեթև ռոտորին պտտվել։ Կենտրոնախույս ուժերը վառելանյութը քշում են դեպի ռեակտիվ այրիչները։ Փոքրիկ ակումուլյատորում էլեկտրական կայծերից տեղի է ունենում ճայթյուն և ռեակտիվ այրիչներից պայծառ բոց է դուրս գալիս։ Շիկացած գազի շիթերը պտտեցնում են վինտը և ապարատը բարձրանում է երկինք։

Այդպիսի ապարատի օգնությամբ կարելի է մինչև 50 կիլոմետրանոց թռիչք կատարել։

ԳԻՆԸ 25 Կ.

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Գ. Վ. ՊԼԵԽԱՆՈՎ—«Փիլիսոփայական ընտիր երկեր», *հինգ հատորով, հատոր I, Հայպետհրատ, 1960 թ., 896 էջ, տիրաժ 3000, գինը 1 ռ. 61 կոպ.։*

Ն Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Աշխարհն առանց զենքի, աշխարհն առանց պատերազմների»։ *1959 թվականի օգոստոս-դեկտեմբեր։ II հատոր, Հայպետհրատ, 1960 թ., 579 էջ, տիրաժ՝ 5000, գինը՝ 74 կոպ.։*

«Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը», *Հայպետհրատ, 1960 թ., 72 էջ, տիրաժ 5000, գինը 7 կոպ.։*

«Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և Սովետական իշխանության հաստատումը Հայաստանում»: *Փաստաթղթերի և նյութերի ժողովածու Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 643 էջ, տիրաժ 2000, գինը 1 ռ. 12 կոպ.։*

Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ—«Գիտությունը Հայաստանում 40 տարում», *Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 60 էջ, տիրաժ 5000, գինը 20 կոպ.։*

«Արևելագիտական ժողովածու»: *Առաջին հատոր, Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., տիրաժ 1500, գինը 1 ռ. 29 կոպ.։*

Ս. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ—«Ուրվագծեր սովետահայ թատրոնի պատմության», *Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 256 էջ, տիրաժ 3000, գինը 1 ռ. 70 կոպ.։*

Ռ. ԶԱՐՅԱՆ—«Ազատյան, արվեստը»: *Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 415 էջ, տիրաժ 3000, գինը 1 ռ. 18 կոպ.։*

Ռ. ԴՐԱՄԲՅԱՆ—«Մարտիրոս Սարյան», *Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 157 էջ, տիրաժ 5000, գինը 1 ռ. 60 կոպ.։*

Գ. ՀՈՎՆԱՆ—«Ռուս-հայ գրական կապերը XIX—XX դարերում», *Հայկ. ՍՍՌ Գիտ. Ակադ. հրատ., 1960 թ., 515 էջ, տիրաժ 3000, գինը 1 ռ.։*

*«Пленум Центрального Комитета Коммунистической партии Советского Союза. 13—16 июля 1960 года». Սղագրական հաշվետվություն, Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 340 էջ, տիրաժ 30000, գինը 60 կոպ.։*

*ХРУЩЕВ Н. С.—«За мир, за разоружение, за свободу народов». Ն. Ս. Խրուշչովի ելույթը Նյու-Յորքում, Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր ասամբլեայի XV սեսիայում, 1960 թվականի հոկտեմբերի 20-ին. Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 335 էջ, գինը 60 կոպ.։*

*«Воспоминания о В. И. Ленине»—ժողովածու, III մաս, Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 388 էջ, գինը 1 ռ. 30 կոպ.։ Ժողովածուում զետեղված են կոմունիստական պարտիայի հնագույն անդամների, միջազգային բանվորական շարժման գործիչների, պարտիական, սովետական և կոմերիտական աշխատողների, գիտության ու կուլտուրայի գործիչների, բանվորների, գինվորների հիշողությունները։*

*ЛЕВИН А.—«Лектор и аудитория»: Դասախոսի դիտողությունները։ Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 88 էջ, գինը 10 կոպ.։*

*«Программные документы коммунистических и рабочих партий капиталистических стран Европы»— Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 468 էջ, տիրաժ 30000, գինը 77 կոպ.։*

*«Основы коммунистического воспитания»—Ուսումնական ձեռնարկ, Պետքաղհրատ, Մոսկվա, 1960 թ., 464 էջ, գինը 70 կոպ.։*